# ՀԱՄԱՌՕՏ ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆ

# ՏՕՆԻՑ ԵՒ ԾԻՍԻՑ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ

## ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ՈՒՂՂԱՓԱՌ Ս. ԵԿԵՂԵՑՒՈՅ

*Ի ՊԷՏՍ ԱԶԳԱՅԻՆ ՆԱԽԱԿՐԹԱՐԱՆԱՑ*

ԱՇԽԱՏՈՒԹԻՒՆ

**ԽՈՐԷՆ ԱՒԱԳ ՔԱՀԱՆԱՅԻ ՓԷՀԼԻՎԱՆԵԱՆ**

معارف نظارت جليله‌سنك فی ۹ ربيع الاول سنه ۳۱۴ تاريخلی
... نومرولی رخصتنامه‌سيله طبع اولنمشدر

Կ. ՊՈԼԻՍ
Տպագր. ՆՇԱՆ Կ. ՊԷՐՊԷՐԵԱՆ
1898



UNIVERSITY OF MICHIGAN LIBRARIES

Pehlivanean, Khoren
Hamar ot batsaqat ... 769

Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ

## Տ. Տ. ՄԿՐՏՉԻ Ա. ՍՐԲԱԶՆԱԳՈՅՆ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ



Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ

## ՍՐԲՈՅ ԵՐՈՒՍԱՂԵՄԻ Տ. ՅԱՐՈՒԹԻՒՆ Ս. ԱՐՔԵՊ.Ի

ՎԵՀԱՊԵՏԵԱՆ

152 p.



ՀՐԱՄԱՆԱՒ

## Տ. ՄԱՂԱՔԻԱՅ Ս. ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼՍՈՅ

*Եւ Պատրիարքին Հայոց Թուրքիոյ*

3c48

# ՊԱՏՐԻԱՐՔԱՐԱՆ ՀԱՅՈՑ

ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ



Արժանաշնորհ Տ. Խորենայ Փէնլիկանեան
խաչակիր Աւագ Քահանայի՝ սիրելւոյ մերում
ի Տէր խնդալ։

Գեղեցիկ խորհուրդ մը յղացեր ես, հաւաստացեալ ժողովրդեան բացատրել իւր ամէն օր տեսած եւ կատարուած՝ խորհրդական եւ ծիսական եւ բարեպաշտական գործողութիւնները :

Բացատրութիւնը մտքին կը խօսի եւ կ՚ընդարձակէ հասկացողութիւնը, սրտին կը խօսի եւ սիրելի կ՚ընէ գործողութիւնը, կամքին կը խօսի եւ կը դիւրացնէ գործադրութիւնը ։

Երրակի նուէր մը կը բերես ուրեմն հաւատացելոց՝ որոց հոգեւոր պաշտօնէութեան կոչուած ես սուրբ կոչմամբդ, եւ կրկնակի լրացուցած կը լինիս զայն՝ անձնական պաշտօնավարութեան կցելով գրական աշխատասիրութիւնը : Երբ առջինով ցվերջ կենացդ կը լինիս արդիւնաւոր, երկրորդով նաեւ յետ մահուանդ կը մնաս

երախտաւոր, Աստուած զՔեզ կրկին վարձուց ընէ արժանաւոր։

Իրաւ է որ Քու ընտրած նիւթդ ընդարձակ է եւ աշխատութիւնդ համառօտ. եւ նիւթդ սպառած չես կրնար համարուիլ։ Բայց ինչպէս նմանօրինակ առթիւ ուրիշ մի պատուական եկեղեցականի — Արժ. Տ. Գիւտ Ա. Քահանայ Աղանեանի — ալ գրած եմ, ժողովրդական թեթեւ աշխատասիրութիւններ աւելի պտուղ կը բերեն քան դասական ծանր երկասիրութիւններ։

Ողջ լինել Քեզ մաղթեմ ի Տէր:

Պատրիարք Կ. Պոլսոյ

*ՄԱՂԱՔԻԱ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ*

1 Մարտ 1898

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Իւրաքանչիւր Կրօնական Ժողով Ազգային Կեդրոնական Վարչութեան իւր պաշտօնավարութեան կանոնական երկամեայ շրջանին մէջ՝ ըստ պահանջման իւր պարտաւորութեան որոշած է յատուկ Շրջաբերականաւ յանձնարարել Գաւառական Թաղական Խորհրդոց եւ Հոգաբարձութեանց, որ իրենց անմիջական հսկողութեան ներքեւ գտնուած վարժարանաց մէջ պարտաւորիչ ընեն Քրիստոնէական կրօնի ուսումն, եւ դիւրուսոյց եղանակաւ աւանդել տան ուսանողաց՝ Ս. Գրոց Հին եւ Նոր Կտակարանի պատմութեան, քրիստոնէական վարդապետութեան եւ բարոյից կարեւոր դասերը։

Շնորհիւ անդուլ հոգածութեան Կրօնական Ժողովոյ իւրաքանչիւր շրջանի՝ Ազգային վարժարանաց մէջ կ'աւանդուին ցայսօր ժամանակի՝ Ս. Գրոց Հին եւ Նոր Կտակարանի պատմութիւնը հանդերձ համառօտ բացատրութեամբ, քրիստոնէական հաւատալեաց էական մասերը, բարոյագիտութեան կարեւոր սկզբունքները, ինչպէս նաեւ Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ համառօտ պատմութիւնը, ա՛յն դասագրոց վրայ, որոնք Կրօնական Ժողովէն ընտրանօք որոշուած եւ առաջնուած են ի կիրառութիւն։

1895–96 տարւոյ շրջանի Կրօն. Ժողովն Ազգ. Կեդր. Վարչութեան՝ Թաղային վարժարանաց մէջ աւանդուած քրիստոնէական կրօնի ուսուցման մասին ընելիք անօրինութեանց ձեռնարկելէ յառաջ, հարկ զատեց տեղեկութիւն ստանալ նախապէս՝ թէ ի՞նչ դասագրքեր կը գործածուին կրօնական ուսմանց համար, եւ թէ՝ շաբաթը քանի՞ օր եւ քանի՞ ժամ կ'աւանդուի իւրաքանչիւր դասարանի կրօնի ուսումը, եւ նոյն միջոցին

ձեռնարկեց պատրաստելու կրօնական ուսմանց ծրագիրն, եւ օգտակար դատեց, որ ուսանող մանկանց բացատրուլին նաեւ Ս. Եկեղեցւոյ մէջ կատարուած տօներն եւ ծէսերը, որոց դասագիրքը կը պակսէր ի մեզ յայնժամ։

Ինձէն ձեռնարկած էի արդէն այս երկասիրութեան, զոր յառաջ տանելու իբր առիթ եւ խրախուսիչ եղաւ Կրօնական Ժողովոյ նոյն որոշումն,' եւ զոր յաջողութեամբ Տեառն աւարտելով մատուցի Կրօնական Ժողովոյ, որ յետ քննութեան՝ ըստ ամենայնի համաձայն գտաւ զայն ողջամիտ վարդապետութեանց առաքելական ուղղափառ Ս. Եկեղեցւոյս Հայաստանեայց, եւ արտօնեց իբրեւ դասագիրք գործածելու յուսումն ուխտի մանկանց Ազգային կրթարանաց, եւ բարեպաշտ ժողովրդոց ընթերցանութեան արժանի մի չահաւէտ գրքոյկ։

Դասագրքիս հրատարակութեան առթիւ կարեւոր կը համարիմ խոստովանիլ, թէ իմ այս երկասիրութիւն չկրեր կնիք կատարելութեան եւ յայտնել միանգամայն՝ թէ հակառակ համառօտութեան դասագրքիս զանց չ'ըրի սակայն բաւական գոհացուցիչ տեղեկութիւններ տալու յօգուտ ուսանողաց, թողլով մեր եկեղեցական քաջահմուտ Ս. Հարց եւ Եղբարց՝ լնուլ դասագրքիս թերին եւ երկասիրել անոր իւրաքանչիւր մասանց նախնական սկզբնաւորութեան, հաստատութեան եւ գործադրութեան պատմութիւնը, որպէս զի՝ իմ իբրեւ ծրագիր պատրաստած գործ հասնի յիւր կատարելութիւն։

ԽՈՐԷՆ ԱԻԱԳ ՔԱՀԱՆԱՅ ՓԷՀԼԻՎԱՆԵԱՆ



# ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆ

## ՏՕՆԻՑ ԵՒ ԾԻՍԻՑ ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ՈՒՂՂԱՓԱՌ

### Ս. ԵԿԵՂԵՑՒՈՅ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ

---

## ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

### Աստուածպաշտութիւն

*Աստուածպաշտութիւնն է հաւատալ յԱստուած կենդանի, ճանաչել զՆա աղբիւր ամենայն բարութեանց, յուսալ ի Նա եւ սիրել զՆա իբրեւ Արարիչ, Տէր եւ Հայր, ուստի Աստուածպաշտութիւնը կը բովանդակւի երեք գլխաւոր առաքինութեանց մէջ. որ են Հաւատ, Յոյս եւ Սէր:*

*Աստուածպաշտութիւնն որ Աստուծոյ արարչին ընծայուած կրօնական պատիւն ու ծառայութիւնն է, ունի երկու մասն. Ներքին եւ Արտաքին։*

*Ներքին է այն պատիւն ու ծառայութիւնը, զոր քրիստոնեայն ներքնապէս, այսինքն մտօք եւ սրտիւ կ'ընծայէ իւր արարչին Աստուծոյ։*

Արտաքին է այն պատիւն ու ծառայութիւնը, զոր քրիստոնեայն ծիսական եղանակաւ կ'ընծայէ իւր արարչին Աստուծոյ ։

Աստուածպաշտութիւնն երկու կերպ է, Առանձնակի եւ Հասարակաց կամ Հրապարակական ։

Առանձնական կ'ըսուի, երբ քրիստոնեայն հանապազօր առաւօտ եւ երեկոյ կ'առանձնանայ իւր բնակավայրին մէջ, եւ աղօթիւք ու երկրպագութեամբ կը դիմէ իւր երկնաւոր Հօր, մատուցանելու համար պէս պէս խնդրուածներ ։

Հասարակաց կամ Հրապարակական կ'ըսուի, երբ քրիստոնեայն իւր հաւատացեալ եղբարց հետ կը պաշտէ զԱստուած գոհութեամբ եւ փառաբանութեամբ, հասարակաց Աստուածպաշտութեան յատկացուած նուիրական տեղերը ։

Հասարակաց Աստուածպաշտութեան յատկացուած նուիրական տեղերն են ըստ ծիսի մի, սուրբ, կաթողիկէ եւ առաքելական եկեղեցւոյ Հայաստանեայց՝ եպիսկոպոսէն (1) օրհնուած եւ սուրբ միւռոնաւ օծուած տաճարները, յորս միայն կարելի է կատարուիլ հասարակաց Աստուածպաշտութիւնը ։

Տաճարները որք յանուն Աստուծոյ կառուցուած եւ Անոր հրապարակական պաշտօն մատուցանելու նուիրուած սրբավայրեր են, ընդհանրապէս կը կոչուին « Եկեղեցի ». անոր համար՝ որ զինուորեալ եկեղեցին նոյն տաճարներուն մէջ կը համախմբուի, ներկայ գըտնուելու համար կատարուած կանոնական ժամերգու-

---

[1] Երբ եպիսկոպոսը չկարենայ անձամբ կատարել նորակառոյց տաճարին օծման արարողութիւնը, յայնժամ հրամանաւ եպիսկոպոսին՝ քահանայ մը կը կատարէ օծման արարողութիւնը։

թեանց , փրկարար Խորհրդոց եւ Սրբազան արարողութեանց , պաշտելու իւր ճշմարիտ Աստուածն եւ խնդրելու Անկէ թէ՛ իւր անձին եւ թէ՛ համօրէն քրիստոնէից կենդանեաց եւ ննջեցելոց համար ամեն բարիք ։

Հասարակաց Աստուածպաշտութեան էական մասերն են .

Ա . — Կանոնական ժամերգութիւնք եւ ծիսական եղանակք ։

Բ . — Տօնակատարութիւնք ։

Գ . — Խորհուրդք սուրբ Եկեղեցւոյ եւ Ս . Պատարագ ։

Դ . — Եկեղեցական արարողութիւնք . եւ

Ե . — Բարեպաշտական աւանդութիւնք ։



# ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

---

# ԿԱՆՈՆԱԿԱՆ ԺԱՄԵՐԳՈՒԹԻՒՆՔ

ԵՒ

# ԾԻՍԱԿԱՆ ԵՂԱՆԱԿՔ



## ԳԼՈՒԽ Ա.

### Կանոնական Ժամերգութիւնք

*Հասարակաց Աստուածպաշտութեան էական մասերէն մին է կանոնական ժամերգութիւնը, որ անխափան կը կատարուի ամէն առաւօտ եւ երեկոյ Ս. եկեղեցւոյ մէջ ։*

*Կանոնական ժամերգութիւնը կը սկսի տէրունական աղօթքով եւ սաղմոսաքաղութեամբ. եւ կը շարունակուի ընթերցմամբ Ս. Գրոց, հոգեւոր երգովք, մաղթանօք, քարոզիւք եւ աղօթիւք ։ Նոյնպէս փրկարար Խորհրդոց եւ սրբազան արարողութեանց սկզբնաւորութիւնք կը լինին տէրունական աղօթիւք եւ սաղմոսիւք ի ձայն կամ ի թիւ ։*

Ս. Գրոց ընթերցմունք են Հին Կտակարանի այն մասերն, որոնք Մեսիային մարգարէութիւնն եւ Անոր կատարելիք փրկագործ տնօրինութիւնները կ'ակնարկեն։ Իսկ Նոր Կտակարանէն չորս Աւետարանք, Գործք Առաքելոց և առաքելական թղթերը։

Հոգեւոր երգոց սկզբնաւորութեան մասին թէպէտ եւ որոշ տեղեկութիւն մը չկայ աւանդուած, սակայն սա ստոյգ է որ Աստուածպաշտութեան առաջին ժամանակներն անգամ ամեն ազգի մէջ կային հոգեւոր երգեր, իբրեւ օրհնութիւնք աստուածապաշտ մարդոց առ Աստուած, ինչպէս Մովսիսի օրհնութիւնն, Դաւթի սաղմոսներն՝ որք աստուածազդեցիկ երգեր են, ի ծննդեան Մեսիային հրեշտակաց երգը, եբրայեցի մանկանց օրհնութիւնն (ովսաննա) եւայլն։ Յետ հաստատութեան քրիստոնէական եկեղեցւոյ հետզհետէ յօրինուած են այլ եւ այլ հոգեզմայլ երգեր, շարականներ, մեղեդիներ, տաղեր, որոնք ըստ պատշաճի աւուր կ'երգուին եկեղեցւոյ մէջ, իբրեւ աղօթք առ Տուիչն ամենայն բարեաց։

Մաղթանք, քարոզք եւ աղօթք՝ հասարակաց Աստուածպաշտութեան կարեւոր մասերն են. որովք կը գոհանամք Աստուծոյ բարերարութեան կամ այն մասնաւոր շնորհաց համար, զորս ընդունած եւ վայելած եմք հաւաքաբար, եւ կը խնդրեմք թողութիւն մեր այն ներելի մեղաց համար, զորս իբրեւ սխալական մարդիկ գործած ենք ակամայութեամբ։

Հասարակաց Աստուածպաշտութեան կամ աղօթից վերաբերեալ ընթերցուածք բովանդակուած են «Ժամագիրք» անուն եկեղեցական սրբամատենին մէջ, զոր յօրինած են մեր երանաշնորհ Թարգմանիչք Սահակ եւ Մեսրոպ եւ երանելի հայրապետք Հայաստան-

# Ա.

## Գիշերապաշտօն կամ Գիշերային ժամ (1)

Գիշերապաշտօնն որ կը մատուցուի Հօր Աստուծոյ, կը սկսուի տէրունական աղօթքով եւ համառօտ օրհնաբանութեամբ մը, եւ ապա Սաղմոս «Տէր զի բազում եղեն» լուր օրերն ի թիւ եւ չաբաթ, կիւրակէ, եւ տօնական օրերն ի ձայն ։

Յաւարտ Սաղմոսին այն օրն յորում պիտի մատուցուի Ս. Պատարագ, կ'երգուի «Յիշեսցուք ի գիշերի զանուն քո Տէր» երգը. Այս երգին կը յաջորդէ «Զարթուցեալքս ամենեքեան» փառատրական եւ հայցողական քարոզը, որմէ վերջը Ներսիսի Շնորհալւոյ յօրինած «Աշխարհ ամենայն» երգն, ամեն լուր եւ տօնական օրերն, երբ Ս. Պատարագ պիտի մատուցուի, եթէ ոչ՝ տօնական օրերն՝ յիսուն եւ պահոց օրերը հարիւր «Տէր ողորմեա» զոր ժամօրհնողը (2) կ'ըսէ ։ Իսկ Կիւրակէ եւ Տէրունական օրերը՝ դարձեալ Ներսիսի Շնորհալւոյ յօրինած երգն «Առաւօտ լուսոյ» . որոյ յաւարտ

---

[1] Գիշերապաշտօն կ'ըսուի այն կանոնական ժամերգութիւնն, որ յառաջ քան զարշալոյսն կը սկսուի եւ առաւօտուն '' աւարտի։

[2] Ժամօրհնող կը կոչուի այն վարդապետը կամ քահանայն, կը սկսի կանոնական ժամերգութիւնը եւ կ'ըսէ ժամագրքի 2 նշանակուած մաղթանքները։

եայց Ս. եկեղեցւոյ Գիւտ, Ցօվհան Մանդակունի եւ Ներսէս Շնորհալի ։

Ըստ կարգաւորութեան ժամագրքի օրն իննն անգամ հասարակաց աղօթք կը կատարուին մեր եկեղեցեաց մէջ միայն, որ կ'ըսուի « Կարգաւորութիւն հասարակաց աղօթից Հայաստանեայց Եկեղեցւոյ ». ինչպէս են Գիշերապաշտօն կամ Գիշերային ժամ, Առաւօտեան ժամ, Արեւագալի ժամ, Երրորդ ժամ, Վեցերորդ ժամ, Իններորդ ժամ, Երեկոյեան ժամ, Խաղաղական ժամ եւ Հանգստեան ժամ,

Լուր օրերը, թէ՛ ուտիք լինի եւ թէ՛ պահք, գիշերային, առաւօտեան, արեւագալի, երրորդ, վեցերորդ եւ իններորդ, երեկոյեան եւ խաղաղական ժամերու պաշտամունք կը կատարուին յարակցաբար, իսկ կիւրակէ եւ այլ տէրունական ու տօնական օրերը՝ գիշերային, առաւօտեան եւ երեկոյեան ժամերու պաշտամունք միայն ։

Քառասնորդական պահոց լուր օրերը յորս չմատուցուիր Ս. Պատարագ, երրորդ, վեցերորդ եւ իններորդ, եւ երեկոյեան ժամու պաշտամունք միացուած կը կատարուին, որ կը սկսի ցորեկուան երրորդ ժամուն եւ կ'ըսուի « Ճաշու » ժամ ։



## Ա·

## Գիշերապաշտօն կամ Գիշերային ժամ (1)

*Գիշերապաշտօնն որ կը մատուցուի Հօր Աստուծոյ, կը սկսուի տէրունական աղօթքով եւ համառօտ օրհնաբանութեամբ մը, եւ ապա Սաղմոս «Տէր զի բազում եղեն» լուր օրերն ի թիւ եւ չաբաթ, կիւրակէ, եւ տօնական օրերն ի ձայն ։*

*Յաւարտ Սաղմոսին այն օրն յորում պիտի մատուցուի Ս. Պատարագ, կ'երգուի «Ցնծացուք ի գիշերի զանուանս քո Տէր» երգը. Այս երգին կը յաջորդէ «Զարթուցեալքս ամենեքեան» փառաւորական եւ հայցողական քարոզը, որմէ վերջը Ներսիսի Շնորհալւոյ յօրինած «Աշխարհ ամենայն» երգն, ամեն լուր եւ տօնական օրերն, երբ Ս. Պատարագ պիտի մատուցուի, եթէ ոչ՝ տօնական օրերն՝ յիսուն եւ պահոց օրերը հարիւր «Տէր ողորմեա» զոր ժամօրհնողը (2) կ'ըսէ ։ Իսկ Կիւրակէ եւ Տէրունական օրերը՝ դարձեալ Ներսիսի Շնորհալւոյ յօրինած երգն «Առաւօտ լուսոյ» . որոյ յաւարտ*

---

[1] Գիշերապաշտօն կ'ըսուի այն կանոնական ժամերգութիւնն, որ յառաջ քան զարշալոյսն կը սկսուի եւ առաւօտուն կ'աւարտի ։

[2] Ժամօրհնող կը կոչուի այն վարդապետը կամ քահանայն, որ կը սկսի կանոնական ժամերգութիւնը եւ կ'ըսէ ժամագրքի մէջ նշանակուած մաղթանքները ։

քահանայն կամ նոյն աւուր պատարագիչը կ՚ընթեռնու «Զքէն գոհանամք» եւ «Խաղաղութիւն ամենեցուն» կցորդով գոհացողական աղօթքը ։ Յետոյ օրուան ձայնէն (3) կ՚երգուի եղանակաւոր Սաղմոս, որ կ՚ըսուի «Կանոնագլուխ» եւ կը կատարուի հոգեհանգստեան պաշտօն վասն յիշատակի հոգւոց ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր հաւատացելոց ։

Յաւարտ պաշտաման Հոգեհանգստեան՝ տէրունական աղօթքով եւ յուսով ի Տէր ննջեցելոց համար բարեմաղթանքով մը կը սկսուի «Օրհնութեան» աւուր պատշաճի շարականը ։ Ինչպէս Մովսէս եւ որդիք Իսրայէլի երգեցին «Օրհնեսցուք զՏէր, զի փառօք է փառաւորեալ»։ Նոյնպէս քրիստոնէական եկեղեցին ի ձեռն Յիսուսի Քրիստոսի՝ անմարմին Փարաւոնի սատանայի ծառայութենէն ազատուելուն համար «Օրհնեսցուք զՏէր զի փառօք է փառաւորեալ» սկզբնաւորութեամբ կ՚երգէ օրհնութեան շարական(4) որ երբ կ՚աւարտի, կ՚ըսուին Մաղթանք տէրունական եւ սրբոց տօնից եւ պահոց աւուրց համար՝ որոնցմէ վերջն ի թիւ կամ ի ձայն կը կարդացուին մեր Սահակ Պարթեւ հայրապետին ը-

---

[3] Ձայներն ութ են, ԱՁ, ԱԿ, ԲՁ, ԲԿ, ԳՁ, ԳԿ, ԴՁ, ԴԿ։ Տարւոյն իւրաքանչիւր օրն ունի այս ութ ձայներէն մին, որ նշանակուած է մեր օրացոյցներուն մէջ։

[4] Մինչեւ հինգերորդ դարուն սկիզբները չկային շարականք օրհնութեան, ուստի օրհնութեան սաղմոսք կ՚երգուէին։ Ս. Սահակ եւ Ս. Մեսրոպ յօրինելով շարականներ՝ երգեցին եւ անոնց հետեւեցան մեր եկեղեցւոյ Ս. Հարք յօրինելու եղանակաւոր երգեր Կիւրակէ, Սրբոց տօնից եւ պահոց աւուրց համար, որք ամեն օր ըստ պատշաճի կ՚երգուին մեր Ս. եկեղեցւոյ մէջ։

սած քարոզներէն եւ սահմանած աղօթքներէն մին ըստ ձայնի, «Խնդրելով ի Տեառնէ պահել զմեզ յերեւելի եւ յաներեւոյթ թշնամեաց եւ ի փորձութեանց, եւ աղաչելով զՏէր վասն խաղաղութեան աշխարհի եւ պահպանութեան ամենայն հաւատացելոց»։

Յետ քարոզից եւ աղօթից կ'երգուի «Թագաւոր յաւիտեանս» յօրինուած ութ ձայներու վրայ, որոնք ժամագրքին մէջ կ'ըսուին «Թագաւորք Մարտիրոսաց»([5])։ Կան նաեւ «Թագաւորք ապաշխարութեան» չաբաթական հնգօրեայ պահոց համար. Ասոնցմէ զատ կայ նաեւ յատուկ «Թագաւոր յաւիտեան, Այսօր զաւք», որ յատկապէս յօրինուած է քրիստոնէական հաւատոյ նախավկայ եւ առաջին մարտիրոս Ս. Ստեփաննոսի համար, որ քարկոծմամբ նահատակուած է ։ Այս երգերն իբրեւ աղաչանք կ'ուղղուին ամեն լուր օրեր առ Տէր Աստուած։ Իսկ Կիւրակէ եւ Տէրունական տօնի օրերն ըստ կարգի կ'ըսուին « Աւէլուք » որոնք իբրեւ օրհնութիւն եւ գոհութիւն կ'երգուին առ Աստուած։ Այս ալէլուք մեր Փրկչին կատարեալ տնօրինութիւններն ակնարկող Սաղմոսներէն հաւաքածոյք մ'են ։

---

[5] Մարգարէից եւ առաքելոց տօնի օրերէն դուրս՝ ուրիշ ամեն որբոց տօնի օրերն եկեղեցին կ'անուանէ Մարտիրոսաց տօն ։

# Բ.

## Առաւօտեան ժամ

Առաւօտեան ժամու պաշտումն որ կը մատուցուի Որդւոյն Աստուծոյ Յիսուսի Քրիստոսի, ունի կենսաբեր յարութեան խորհուրդը։ Երբ մեր Փրկիչը յարեաւ ի մեռելոց, երեւցաւ նախ իւղաբեր կանանց, ապա աշակերտաց եւ հետզհետէ այլոց բազմաց, եւ լցուց զանոնք հոգեւոր ցնծութեամբ։ Ուստի ի սկզբան առաւօտեան ժամուն՝ յետ Տէրունական աղօթից կ'ըսուի այս մաղթանքը «Լցաք առաւօտու ողորմութեամբ քով, ցնծացաք եւ ուրախ եղաք զամենայն աւուրս կենաց մերոց» . «Օրհնեալ ես Տէր Աստուած հարցն մերոց գովեալ եւ փառաւորեալ է անուն քո յաւիտեան» փոխսաղմոսէն վերջը կ'երգուի հարցի չարականը, յորում կը պատմուի երից մանկանց հրաշալի փրկութիւնն ի հրեշտակէն, զոր Որդի Աստուծոյ դաւանեցաւ Նաբուգոդոնոսոր .

Զկնի հարցի չարականին կ'ըսուի աղաչաւոր քարոզ մը, որով կ'աղաչենք զՏէրն մեր Յիսուս Քրիստոս, որ լուսաւոր եւ սուրբ պահէ մեր միտքը, որպէս զի ամեն մեղքէ եւ աշխարհային ցանկութիւններէ խորշելով՝ ուշադիր լինինք պահելու մեր Փրկչին պատ-

ուխտանքները եւ ընդունելու յաւիտենական կենաց պսակը ։

Այս քարոզին կից մաղթանքէն վերջը կ'երգուի «Մեծացուցէ» շարականը, որով կը յիշենք Յիսուսի Տեառն մերոյ հրաշափառ ծնունդն ի Ս. Կուսէն Մարիամայ, եւ բաց ի Կիւրակէէ՝ ամեն լուր, տօնական եւ տէրունական օրեր սահմանադրեալ քարոզով եւ աղօթքով մը կ'աղաչենք զԱստուած զՀայրն մեր երկնաւոր, միջնորդ ունելով իւր միածին Որդւոյ ծնողքն Ս. Կոյսն Մարիամ եւ բոլոր սուրբերը, որ մեր մեղքերը ներէ եւ արժանի ընէ զմեզ՝ գոհութեամբ փառաւորելու զԻնքն:

Կիւրակէ օրն որ Քրիստոսի Տեառն մերոյ յարութեան յիշատակն է «Մեծացուցէ» շարականէն վերջը՝ Կիւրակէ աւուր յատուկ եղած եղանակաւոր քարոզով կ'աղաչենք զՏէր, եկեղեցւոյն շինութեան եւ բարեկարգութեան, հաւատացելոց փրկութեան եւ անոնց պաղատանաց ընդունելութեան համար, եւ աղօթքով մը կրկնելով մեր քրիստոնէական հաւատոյ այն համառօտ դաւանութիւնը, թէ Յիսուս Քրիստոս Աստուած մեր յաւիտեանս յաւիտենից թագաւորն է, եւ զինքն զԱստուածորդին Յիսուս Քրիստոս ի գերեզմանի թաղուած հաւատալով կ'երգենք. «Արի Տէր, օգնեա մեզ եւ փրկեա զմեզ իսպառ վասն անուան Քո» «Արի եւ մի մերժեր զմեզ վասն անուան Քո»։ Եպիսկոպոսը կամ քահանայն շուրջառազգեստ Իւղաբերից Ս. Աւետարան ի ձեռին աւանդատունէն դուրս ելնելով, որ է նշան մեր Փրկչին ի գերեզմանէ յառնելոյ. կ'ելնէ բեմն առաջնորդութեամբ բուրվառակիր սարկաւագին եւ երկու մոմակալաց, եւ նոյն պահուն կ'երգենք ուրախութեամբ, «Թագաւորեսցէ Տէր յաւիտեան, Աստուած քո Սիոն յազգէ յազգ» եւ «Օրհնեա անձն իմ

## Բ.

## Առաւօտեան ժամ

*Առաւօտեան ժամու պաշտօնն որ կը մատուցուի Որդւոյն Աստուծոյ Յիսուսի Քրիստոսի, ունի կենսաբեր յարութեան խորհուրդը։ Երբ մեր Փրկիչը յարեաւ ի մեռելոց, երեւցաւ նախ իւղաբեր կանանց, ապա աշակերտաց եւ հետզհետէ այլոց բազմաց, եւ լցուց զանոնք հոգեւոր ցնծութեամբ։ Ուստի ի սկզբան առաւօտեան ժամուն՝ յետ Տէրունական աղօթից կ'ըսուի այս մաղթանքը «Լցաք առաւօտու ողորմութեամբ քով, ցնծացաք եւ ուրախ եղաք զամենայն աւուրս կենաց մերոց» . «Օրհնեալ ես Տէր Աստուած հարցն մերոց գովեալ եւ փառաւորեալ է անուն քո յաւիտեան» փոխսաղմոսէն վերջը կ'երգուի հարցի շարականը, յորում կը պատմուի երից մանկանց հրաշալի փրկութիւնն ի հրեշտակէն, զոր Որդի Աստուծոյ դաւանեցաւ Նաբուգոդոնոսոր .*

*Զկնի հարցի շարականին կ'ըսուի աղաչաւոր քարոզ մը, որով կ'աղաչենք զՏէրն մեր Յիսուս Քրիստոս, որ լուսաւոր եւ սուրբ պահէ մեր միտքը, որպէս զի ամեն մեղքէ եւ աշխարհային ցանկութիւններէ խորշելով՝ ուշադիր լինինք պահելու մեր Փրկչին պատ-*

ուխտանքները եւ ընդունելու յաւիտենական կենաց պսակը ։

Այս քարոզին կից մաղթանքէն վերջը կ'երգուի «Մեծացուսցէ» շարականը, որով կը յիշենք Յիսուսի Տեառն մերոյ հրաշափառ ծնունդն ի Ս. Կուսէն Մարիամայ, եւ բաց ի Կիւրակէէ՝ ամեն լուր, տօնական եւ տէրունական օրեր սահմանադրեալ քարոզով եւ աղօթքով մը կ'աղաչենք զԱստուած զՀայրն մեր երկնաւոր, միջնորդ ունելով իւր միածին Որդւոյ ծնողքն Ս. Կոյսն Մարիամ եւ բոլոր սուրբերը, որ մեր մեղքերը ների եւ արժանի ընէ զմեզ՝ գոհութեամբ փառաւորելու զինքն:

Կիւրակէ օրն որ Քրիստոսի Տեառն մերոյ յարութեան յիշատակն է «Մեծացուսցէ» շարականէն վերջը՝ Կիւրակէ աւուր յատուկ եղած եղանակաւոր քարոզով կ'աղաչենք զՏէր, եկեղեցւոյն շինութեան եւ բարեկարգութեան, հաւատացելոց փրկութեան եւ անոնց պաղատանաց ընդունելութեան համար, եւ աղօթքով մը կրկնելով մեր քրիստոնէական հաւատոյ այն համառօտ դաւանութիւնը, թէ Յիսուս Քրիստոս Աստուած մեր յաւիտեանս յաւիտենից թագաւորն է, եւ զինքն զԱստուածորդին Յիսուս Քրիստոս ի գերեզմանի թաղուած հաւատալով կ'երգենք. « Արի Տէր, օգնեա մեզ եւ փրկեա զմեզ իսպառ վասն անուան Քո» « Արի եւ մի մերժեր զմեզ վասն անուան Քո »։ Եպիսկոպոսը կամ քահանայն շուրջառազգեստ Իւղաբերից Ս. Աւետարան ի ձեռին աւանդատանէն դուրս ելնելով, որ է նշան մեր Փրկչին ի գերեզմանէ յառնելոյ. կ'ելնէ բեմն առաջնորդութեամբ բուրվառակիր սարկաւագին եւ երկու մոմակալաց, եւ նոյն պահուն կ'երգենք ուրախութեամբ, «Թագաւորեսցէ Տէր յաւիտեան, Աստուած քո Սիոն յազգէ յազգ» եւ «Օրհնեա անձն իմ

զՏէր, օրհնեցից զՏէր ի կենդանութեան իմում»։ Քահանայն կ'ընթեռնու Իւղաբերից Ս. Աւետարանը [1]։ Յաւարտ Ս. Աւետարանին բաց ի քառասնորդական պահոց կիւրակէներէն, քահանայն կ'աւետարանէ մեր Փրկչին կենսաբեր յարութիւնը՝ եկեղեցական դասէն աստիճանաւ կամ ձեռնադրութեամբ երիցագունին ըսելով՝ «Քրիստոս յարեաւ ի մեռելոց», եւ երիցագոյնն կը հաղորդէ Ս. Յարութեան աւետիսը միւս եկեղեցական պաշտօնէից։ Նոյն պահուն փառատրական երգով կ'օրհնենք, կը գովենք եւ կը փառաւորենք Քրիստոսի Տեառն մերոյ տիեզերալոյս յարութիւնը։ Սարկաւագը «Զուարճացեալքս մեծաւ ուրախութեամբ» քարոզով կը խնդրէ ի Տեառնէ, որ զմեզ զամենքս արժանի ընէ յարութեան, եւ քահանայն կ'ըսէ «Ամենակեցոյց ճշմարիտ, սուրբ եւ մեծի յարութեան մաղթանքը»։ Յետ որոյ կ'երգուի «Ողորմեա՛յի» շարականը, որ կը յիշեցնէ մեզ մեր Նախամօր փրկութիւնը ծննդեամբ Ս. Կոյս Մարիամու Աստուածածնի, եւ կը խնդրուի մեր Փրկչին ողորմութիւնը մեր անձանց համար։

Յաւարտ շարականին սարկաւագը գոհաբանական քարոզով մը գոհութիւն կը մատուցանէ առ Տէրն մեր Քրիստոս, որ զմեզ զամենքս արժանի ընէ իւր անճառելի այն խոստմանց, զոր խոստացաւ իւր բոլոր սիրելեաց, որոնց յարակից մաղթանքէն վերջը երգեցիկ դպիրք կ'երգեն «Օրհնեցէք զՏէր յերկնից», որով ման-

---

(1) Քառասնորդական պահոց կիւրակէ օրերը Թաղման մասը եւ Զատկի յինանց մէջ յարութեան մասը միայն կը կարդացուի Իւղաբերից Աւետարանէն, որ Քրիստոսի Տեառն մերոյ Թաղումն ու յարութիւնը կը պատմէ ի լուր հաւատացելոց.

*կունք եկեղեցւոյ կք հրաւիրուին երգել օրհնութեան երգեր ։*

*Այս շարականէն վերջը կ'երգուի հրեշտակաց փառաբանական երգն « Փառք ի բարձունս Աստուծոյ եւ յերկիր խաղաղութիւն ի մարդիկ հաճութիւն » ։ Հրեշտակաց այս երգն ունի այս իմաստը , « Փառս կը մատուցանենք Հօր Աստուծոյ՝ ծննդեամբ միածին Որդւոյն , որով երկնից խաղաղութիւնը պիտի իջնէ երկրի վրայ եւ Հօր Աստուծոյ հաճութիւնը պիտի դառնայ մարդկային ազգի վրայ ։*

*Հրեշտակաց երգին վրայ եղած յաւելուածն որոյ կէսը մեր ուղղափառ դաւանութեան համառօտութիւնն է , եւ այն պահուն ձեռնամած (1) կը կենանք , եւ միւս կէսը հայցողական աղօթք , եւ յայնժամ բազկատարած կը կենանք , Նիկիոսի տիեզերական Ս. Ժողովոյ մէջ սահմանուած է , կ'ըսուի ։ Այս սքանչելի երգն ամեն առաւօտեան ժամերգութեան կ'ըսուի ։*

*Կիւրակէ օրերը սարկաւագը իւր քարոզովը կը հրաւիրէ հաւատացեալները զԱստուած աղաչելու վասն խաղաղութեան ամենայն աշխարհի եւ հաստատութեան Ս. եկեղեցւոյ , ամենայն Հայոց Հայրապետին , եպիսկոպոսաց , վարդապետաց , քահանայից , սարկաւագաց , դպրաց եւ ամենայն ուխտի մանկանց եկեղեցւոյ . ինչպէս նաեւ ճանապարհորդաց ողջամբ ուղեւորութեան , հիւանդաց առողջութեան , անձրեւաց քաղցրութեան , պտղոց առատութեան եւ ի Քրիստոս ննջեցելոց հոգւոց համար , առ որս ժողովուրդը կ'աղաղակէ « Տէր ողորմեա ։ »*

---

[1] Ձեռնամած կը նշանակէ ափ ափոյ կցել, որ է նշան միութեան քրիստոնէական եկեղեցւոյ, դաւանութեամբ միոյ միայնոյ ճշմարտին Աստուծոյ ։

*Ս. Ծննդեան եւ Ս. Աստուածածնի տօնի օրերուն կ'ըսուի « Մայր սուրբ, աքանչելի լուսոյն »։ Սրբոց յիշատակի օրերը՝ ըստ պատշաճի կանոնեալ քարոզ մը՝ մարգարէից եւ առաքելոց համար կամ հայրապետաց եւ մարտիրոսաց համար յօրինուած։ Իսկ պահոց օրերը՝ Փառաւորեսցուք զամենակալն Աստուած քարոզը, որով կը գոհանամք զԱստուծոյ ամբողջ գիշերը խաղաղութեամբ անցնելնուս. եւ կը խնդրեմք առաջիկայ ցորեկն ալ խաղաղութեամբ անցնելու Աստուծոյ հզօր պաշտպանութեան ներքեւ։*

*Այս քարոզէս յետոյ քահանայն կ'ընթեռնու « Գոհանամք զքէն Տէր Աստուած մեր » աղօթքը, եւ յետոյ « Խաղաղութիւն ամենեցուն (1) » ըսելով կը շարունակէ անոր երկրորդ մասը, որուն կը յաջորդէ երեքսրբեան երգը « Սուրբ Աստուած, Սուրբ եւ հզօր, Սուրբ եւ անմահ, որ խաչեցար վասն մեր. ողորմեա մեզ»։ Այսպէս կ'երգուի ամէն լուր եւ տէրունական օրերը, իսկ կիրակամուտ երեկոյներն եւ կիւրակէ օրերն « Որ յարեար ի մեռելոց, » եւ միւս տնօրինական տօներուն կ'երգուի ըստ պատշաճի աւուր. Հոգեգալստեան տօնին միայն կ'երգուի ի դէմս Հոգւոյն սրբոյ, ուստի եւ կ'երգուի « Որ եկիր եւ հանգեար յառաքեալսն »։ Երեքսրբեան երգին յարակից է « Փառաւորեալ եւ օրհնեալ միշտ սուրբ կոյս ». զայս ըստ աւանդութեան յօրինած է Թովմաս առաքեալ, որով մեզ միջնորդ կ'ունե-*

[1] Հայրապետք, Պատրիարքք եւ առաջնորդ Եպիսկոպոսք եկեղեցւոյ մէջ այս խաղաղութիւնն իրենք կուտան ժողովրդոց վրայ խաչակնքելով, ինչպէս նաեւ առաւօտեան « Զքէն գոհանամք » եւ երեկոյեան « Լուր ծայնից » աղօթքի ժամանակ.

նամք զսուրբ կոյսն Մարիամ Աստուածածին․ մեր աղաչանքը մատուցանելու իւր միածին Որդւոյն Աստուծոյ, Ցետոյ « Փրկեա զմեզ ի փորձութենէ » մաղթանքը եւ « Վասն լսելի լինելոյ Տեառն Աստուծոյ » քարոզը։ Լուր օրերը « Օրհնեցէք մանկունք զՏէր » սաղմոսի սկզբնաւորութեամբ ըստ պատշաճի կ'երգուի շարական, որով եկեղեցին որ մեր մայրն է, կը հրաւիրէ իւր մանուկներն օրհնել զԱստուած ։ Ցաւարտ շարականին կ'ընթեռնու քահանայն « Սուրբ ես Տէր Աստուած մեր » աղօթքը, որով Աստուծոյ մարդասիրական գութը կը հայցեմք, եւ կը խնդրեմք ինչ որ հարկաւոր է մեր հոգւոյ եւ մարմնոյ պիտոյից համար ։

Այս աղօթքէն ետքը (1) տօնի օրերը « Սիրեցի զի լուիցէ » եւ պահոց օրերը՝ « Բանից իմոց ունկն դիր » փոխ-սաղմոսին սկզբնաւորութեան ժամանակ կ'ըսուի Ներսէսի շնորհալւոյ հեղինակած երգը չարքթուան իւրաքանչիւր օրուան համար, որ Աստուածային արարչութեան պատմութիւնն է․ զոր փառաբանական եղանակաւ մը կը պատմենք, եւ յիշելով անոր նախախնամութիւնն ու ամենակարողութիւնը՝ կը մատուցանեմք պէս պէս հայցուածներ ։

Զկնի այս երգին կ'ըսուի «Քրիստոս Աստուած մեր» մաղթանքը սրբոց յիշատակի օրերը, որով Աստուծոյ խաղաղութիւնն եւ ողորմութիւնն կը խնդրեմք մեզ համար, բոլոր սուրբերն եւ ի մասնաւորի նոյն օրը յիշատակուած սուրբը բարեխօս ունելով մեզ, եւ քա-

---

(1) Ըստ հրահանգի ժամագրքին այս աղօթքէն անմիջապէս յետոյ հարկ է ըսել «Տէր ամենակալ» Մանասէի աղօթքը քառասնորդական պահոց լուր օրերը, բայց Կ. Պոլսոյ եկեղեցեաց մէջ Արեւագալէն ետքն ըսելու սովորութիւնը ներմուծուեր է։

համայն առաքելոց եւ մարգարէից, հայրապետաց ու վարդապետաց տօնի օրուան համար ուրոյն եւ մարտիրոսաց, ճգնաւորաց եւ կուսանաց համար ուրոյն յօրինուած աղօթքը կը կարդայ, մաղթելով ի Տեառնէ, որ նոյն օրը յիշատակուած սրբոյն աշխարհի աստ ունեցած հաւատոյ, յուսոյ եւ սիրոյ եւ հոգեւոր արիութեան շնորհքը պարգեւէ համօրէն հաւատացեալ ժողովրդեան եւ ողորմի ամենուն իւր անհուն գթութեամբըն եւ անքաւ մարդասիրութեամբ։ Իսկ պահոց օրերը կենսատու սուրբ Խաչը մեզ ապաւէն եւ օգնական լինելու իմաստն ունեցող մաղթանքով, քարոզով եւ աղօթքով կ'աղաչէ քահանայն զՏէր Աստուած, որ Սուրբ եւ պատուական խաչիւ պահպանէ զհաւատացեալս յանուն իւր ի խաղաղութեան։ Կիւրակէ օրերը յետ երեքսրբեան երգին կ'ըսուի եղանակաւ «Եղիցի անուն Տեառն օրհնեալ» սաղմոսը, եւ ըստ ձայնի աւուրն (1) Ս. Աւետարանէն կը կարդացուի բժշկութեան հրաշքներ պատմող մի կամ երկու հատուած. իսկ տնօրինական եւ տէրունական տօներուն կը կարդացուի Առակաց եւ Մարգարէից գրուածներէն եւ առաքելական թղթերէն եւ ապա Ս. Աւետարան ըստ նշանակեալ հրահանգաց տօնացուցին, յաւարտ Ս. Աւետարանին կերգուի Ներսէսի շնորհալւոյ հեղինակած «Նորաստեղծեալ» հոգեբուղխ երգը, զոր երանելի հայրապետը յօրինած է միաշաբաթի աւուր համար ի յիշատակ Յարութեան Քրիստոսի։ Քառասնորդաց մեծի պահոց կիւ-

(1) Թէ՛ լուր եւ Թէ՛ տօնական օրերը հանգստեան, Իւղաբերից եւ Կեցո՛ի աւետարանք ըստ ծայնի աւուր կը կարդացուին. ուստի ած եւ գծ ծայնին, Յովհաննու. ակ եւ գկ. Ղուկասու բծ եւ գծ ին, Մարկոսի. բկ եւ դկ ին, Մատթէոսի աւետարանէն։

րակէ օրերը Նորաստեղծեալ երգին առաջին երկու պարբերութիւնք. միայն կ'երգուին իբրեւ երգ միաշաբաթի աւուր : Ապա դպիրք կ'երգեն միաձայն՝ «Կեցո Տէր» (1) եւ երիցս «Տէր ողորմեա» . յետոյ յարակից աղօթքն , որով Քրիստոսի Ս . Յարութիւնն կամ անոր ուրիշ մի փրկական տնօրինութիւնը կ'օրհնենք ու կը փառաւորենք քրիստոնէավայել երկիւղածութեամբ։ Այսպէս կը կնքուի առաւօտեան ժամերգութիւնը :

## Գ.

## Արեւագալ

Արեւագալի ժամն ունի այն խորհրդաւոր նշանակութիւնը, թէ իմանալի արեգակն արդարութեան Յիսուս Քրիստոս յերկնից ծագեցաւ մեր վրայ, եւ լուսաւորեց զմեզ խաւարային մեղքէ , ուստի նոյն ժամուն կ'աղաչենք զսուրբ Հոգին Աստուած , որում կը մատուցուին Արեւագալի ժամու եկեղեցական պաշտամունք , որ ի ծագել զգալի արեգական՝ լուսաւորէ մեր միտքն ու սիրտն իւր իմանալի լուսով :

Տօնացոյցը տուած է բացորոշ հրահանգ Արեւագալի

[1] Այս պահուն քահանայն զաւետարանն կը բարձրացնէ ի տես ժողովրդեան , ուզելով ըսել՝ Թէ; այս սուրբ Աւետարանաւ կեցո Տէր զժողովուրդս քո զհաւատացեալս ի Քեզ։

ժամուն համապատասխան աղօթքը մատուցանելու այն ամեն լուր օրերը՝ յորս չմատուցուիր Ս. Պատարագ։

Արեւագալի ժամերգութիւնը կը կատարուի սկզբնաւորութեամբ տէրունական աղօթքին, փոխ-սաղմոսներով, մաղթանքներով, քարոզներով եւ աղօթքներով. որոնք նշանակուած են մի առ մի ժամագրքին մէջ, իսկ քառասնորդական պահոց լուր օրերը՝ բացի շաբաթէ կ'երգուին մեր երանելի Ս. Հարց յօրինած հոգեւոր երգերը։

---

## Դ.

## Երրորդ ժամ

Երրորդ ժամու համապատասխան աղօթքն որ եւ կ'ըսուի «Ճաշու» կը մատուցուի Հոգւոյն սրբոյ, որ այս ժամուն եկաւ եւ հանգեաւ վերնատան մէջ ժողովեալ երկոտասան առաքելոց եւ այլ հաւատացելոց վրայ։ Նաեւ կը մատուցուի Աստուած Որդւոյն, որ այս ժամուն բարձրացաւ ի խաչին:

Ճաշու ժամը կը սկսուի տէրունական աղօթքով եւ «Օրհնեալ Հոգին սուրբ, Աստուած ճշմարիտ». փառաբանութեամբ եւ «Ողորմեա ինձ Աստուած» յիսներորդ սաղմոսէն ետքը՝ կ'երգուի «Օրհնեմք զքեզ[1] զոր հեղինակած է Ս. Ներսէս Շնորհալի հայրապետն, ինչպէս եւ միւս երկու ճաշու ժամերուն երգը.

---

[1] Երրորդ ժամու ճաշուն երբ եւ ըսուի, կ'երգուի

## Ե․

## Վեցերորդ ժամ

Վեցերորդ ժամուն կ'աղօթենք առ Հայրն Աստուած, խնդրելով օգնականութիւն մեր տկար բնութեան, որ հակամէտ է գթելու ի մեղս ։ Նաեւ կը մատուցուի Որդւոյն Աստուծոյ, որ այս ժամուն ճաշակեց խաչին վրայ քացախով խառնուած լեղին, որով քաղցրացուց մահաբեր պտղոյն դառնութիւնը ։

Վեցերորդ ժամու աղօթից սկսումը կը լինի տէրունական աղօթքով եւ « Օրհնեալ Հայր սուրբ, Աստուած ճշմարիտ » փառաբանութեամբ,



## Զ․

## Իններորդ ժամ

Իններորդ ժամուն կ'աղօթենք առ Որդին միածին Յիսուս Քրիստոս, որ ի սեղան խաչին աւանդեց իւր

---

միշտ « Օրհնեմք զքեզ »․ իսկ վեցերորդ եւ իններորդ ժամուն երգերը ինչպէս նաեւ անոնցմէ ետքը եղած երեք քարոզներն ու աղօթքները զոր Ս․ Յովհան Մանդակունի յօրինած է, քաւասնորդական պահոց ճաշուներուն կ'ըսուի ։

*հոգին առ Հայրն Աստուած , որով մեղաց մեռելութենէ կենդանացուց զմեզ ։*

*Իններորդ ժամու աղօթից սկսումը կը լինի տէրունական աղօթքով եւ « Օրհնեալ Որդիդ սուրբ , Աստուած ճշմարիտ » փառաբանութեամբ .*

*Այս երեք ճաշուն հետզհետէ ըսելու սովորութիւն եղած է անոր համար՝ որ աղօթող ժողովուրդը կարենայ ներկայ գտնուիլ մատուցուած հասարակաց աղօթից ։*

*Քառասնորդական մեծի պահոց լուր օրերը ճաշուն ժամերգութենէն եւ ի Քրիստոս ննջեցելոց հոգւոց համար բարեմաղթանք մ'ընելէ յետոյ անմիջապէս կը սկսուի երեկոյեան ժամերգութիւնը ։*



## Է.

## Երեկոյեան ժամ

*Երեկոյեան ժամուն կ'աղօթենք առ Որդին միածին, որոյ թաղման խորհուրդն ունի ։ Ուստի կը խնդրենք ի Տեառնէ որ այս անցաւոր աշխարհէ սկսեալ մինչ ցհանդերձեալն պահէ զմեզ իւր խնամոց ներքեւ ։*

*Յառաջ քան զսկսումն երեկոյեան ժամերգութեան սովորութիւն եղած է եկեղեցւոյ մէջ կարդալու «Յայսմ աւուր » գիրքը, որ Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ փրկագործ տնօրինութիւնները պատմելէ զատ քրիստոնէական հաւատով, յուսով եւ սիրով մարտիրոսա-*

ցած Սրբոց նահատակութիւնն եւ աստուածահաճոյ անձնաւորութեանց այս աշխարհի մէջ ունեցած առաքինի կեանքն եւ նախանձելի վարքն ու բարքը կը նկարագրէ, որպէս զի ունկնդիր ժողովուրդը հետեւի անոնց օրինակելի կենաց։

Երեկոյեան հասարակաց աղօթից սկզբնաւորութիւնը կը լինի Տէրունական աղօթքով եւ « Ես առ Աստուած կարդացի, եւ նա լուաւ ինձ յերեկոյս, ի վաղորդեան եւ ի հասարակ աւուր » մաղթանքով, որմէ յետոյ կ'ըսուի փոխ Սաղմոս « Խոնարհեցո, Տէր, զունկն քո եւ լուր ինձ » եւ յաւարտելն կ'ըսուի Ս. Յովհան Ոսկեբերանի փառատրական մաղթանքը. «Փա՛ռք քեզ Աստուած, փա՛ռք քեզ, յաղագս ամենայնի, Տէր, փա՛ռք քեզ ». վերջը փոխ-սաղմոս « Ապրեցո զիս Տէր » յետոյ առ ամենասուրբ Երրորդութիւնն ուղղեալ փառաբանական մաղթանք. ամեն երեկոյ, բացի կիրակամուտ շաբաթ երեկոյէն, յորում կ'երգուի « Լոյս զուարթ » եղանակաւ, զոր մեծ պահոց կիրակամուտից՝ ժամ օրհնողը կ'ըսէ ի թիւ. ապա դոհաբանական քարոզ եւ զամենասուրբ Երրորդութիւնն փառաւորելու իմաստ ունեցող մաղթանք մը։ Քառասնորդական պահոց լուր օրերը այս քարոզէն ու մաղթանքէն անմիջապէս ետքը կը կարդացուին Հին Կտակարանէն պատմական կամ մարգարէական հատուածներ։

Մեսեդիք կ'ըսուի երեկոյեան սաղմոսաքաղութեան իբրեւ միջանկեալ սաղմոս երկու տուն. ապա « Ուղիղ եղիցին աղօթք իմ, որպէս խունկ առաջի քո Տէր. մբարձումն ձեռաց իմոց, պատարագ երեկոյի » որով խնդրենք, թէ մեր աղօթքը բարձրանայ առ Աս-ւած որպէս խունկ, եւ մեր ձեռաց ի վեր յերկինս

համբարձումն նկատուի իբրեւ երեկոյեան պատարագ առաջի Աստուծոյ ։ Յետոյ սարկաւագը կիրակամուտից եւ յարութեան երեկոյները կը քարոզէ « Ասասցուք » իսկ Ս. Ծննդեան եւ Ս. Աստուածածնի տօներուն « Մայր սուրբ » եւ լուր օրերը « Աղաչեսցուք զամենակալն Աստուած զՀայր Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ըզ-թագաւորն խաղաղութեան, յագագս խաղաղութեան եւ վասն միայնոյ, սուրբ կաթողիկէ եւ առաքելական եկեղեցւոյ » ։ Այս քարոզներուն կը յաջորդէ «Լուր ձայնից մերոց Տէր Աստուած մեր » խաղաղութիւն ամենեցուն» կցորդով աղօթքը, զոր քահանայն կ'ընթեռնու, որով կը խնդրենք Աստուծմէ որ աւելցնէ մեր հաւատը, յոյսը եւ սէրն եւ ամեն առաքինական գործերը, եւ կը հայցեմք համօրէն աշխարհի խաղաղութիւն եւ իւր սուրբ եկեղեցւոյն հաստատութիւն ։ Ապա դպիրք կը նուագեն ըստ աւուր պատշաճի երեքսրբեան երգը, անոր յատկացեալ մաղթանքովն ու քարոզով ։

Համբարձիի շարականն երգելով՝ կը յայտնեմք, թէ Աստուծոյ օգնութեան կարօտութիւն ունինք պահելու զմեզ յամենայն չարէ հոգւոյ եւ մարմնոյ. եւ պահելու մեր մուտքն յաշխարհ. եւ մեր ելքն մահուամբ ։ Սարկաւագը կը քարոզէ բոլոր աշխարհի խաղաղութեան եւ սուրբ Եկեղեցւոյ հաստատութեան համար զՏէր աղաչելու ։ քահանայն կ'ըսէ « Հայր գթած » աղօթքը, որոյ իմաստն է որ բարեխնամ արարիչն Աստուած երեկոյեան ժամուն հաւատացեալոց մատուցած պաղատանքն ընդունի եւ անոնց հոգեւոր եւ մարմնաւոր պէտքերը զորս ինքը մեր խնդրելէ առաջ գիտէ, պարգեւէ իւրաքանչիւր ումեք. Ապա փոխ-սաղմոս « Որ

*ընակեալն է» որով կը խնդրենք մնալ հանապազ բարձրելոյն Աստուծոյ հովանաւորութեան ներքեւ եւ արժանաւորել երկնային հանգստեան ։*

*Մաղթանք « Զբարձրեալն արասցուք մեզ ապաւէն» եւ նոյնիմաստ քարոզէն վերջը քահանայն կ'աղօթէ ըսելով՝ « Կենաց յոյս, աղօթից ընդունող, մեղաց ներող եւ խնդրուածոց կատարող Յիսուս Քրիստոս Աստուած ընդունէ մեր աղաչանքը զորս կը մատուցանեմք ։ Իսկ ամեն կիրակամտի եւ տէրունական աւուրց եւ անոնց նախընթաց երեկոյները կ'ըսուի « Կեցո Տէր » եւ քահանայն յետ բարձրացնելոյ զՍ. Աւետարանն ի տես ժողովրդեան կ'աղօթէ առ Աստուած որ իւր ահաւոր անուան հաւատացեալ ժողովուրդը պահէ սուրբ Խաչին հովանւոյն ներքեւ միշտ ի խաղաղութեան ։*

*Կիրակամուտ երեկոյները յետ ժամերգութեան հոգեհանգստեան պաշտօն կը կատարուի վասն հոգւոց ի Քրիստոս ննջեցելոց ։ եւ մեծի պահոց կիրակամտից « Հոգւոցն հանգուցելոց » ըսելով աղօթք կը մատուցուի առ Աստուած վասն հոգւոց ննջեցելոց ։*



## Ը.

## Խաղաղական ժամ

*Խաղաղական ժամն ունի խորհուրդ խաչեցելոյն Յիսուսի Քրիստոսի յետ մահուան ի դժոխս իջնելուն եւ արդար հոգիներն ազատելուն ։*

Խաղաղական ժամու հասարակաց աղօթքը կը մատուցուի Որդւոյն Աստուծոյ, եւ որ կը սկսուի տէրունական աղօթքով եւ « Տէր Աստուած փրկութեան իմոյ ի տուէ կարդացի եւ ի գիշերի առաջի քո » մաղթանքով, եւ « Ի կարդալ իմում լուար ինձ Աստուած» փոխ-սաղմոսով, որմէ յետոյ կ'երգուի « Շնորհեա մեզ Տէր » երգը, (1) եւ մեծի պահոց լուր աւուրց երեկոյները կ'երգուին նաեւ « Նայեաց սիրով » եւ « Ի քէն հայցեմք » շարականները, զորս երկասիրած է Սուրբ Ներսէս Շնորհալին։ Այս շարականաց մէջտեղն եւ վերջը նշանակուած մաղթանքներով, քարոզներով եւ աղօթքներով կ'աղաչենք զԱստուածորդին՝ որ լինի պահապան մեր անձանց յառաջիկայ գիշերն հոգւոյ եւ մարմնոյ խաղաղութեամբ անցընելու։



Թ.

## Հանգստեան ժամ

Հանգստեան ժամու հասարակաց աղօթքը կը մատուցուի Հօր Աստուծոյ, խնդրելով որ անքուն պահապանն Իսրայէլի իւր պահպանողական Աջով պահէ զմեզ անխռով եւ արժանի ընէ զմեզ հասնիլ ողջամբ գիշերային եւ առաւօտեան ժամուն ի փառաբանութիւն ամենասուրբ Երրորդութեան։

[1] Ըստ աւանդական պատմութեան կ'ըսուի թէ այս երգը Սեւանայ կղզւոյն մէջ երգուած է առաջին անգամ։

*Հանգստեան ժամու պաշտամունքը կը կատարուի ըստ կարգաւորութեան Ժամագրքին թէ՛ եկեղեցեաց եւ թէ՛ վանքերու մէջ ։ Կան հայ քրիստոնեայք, որ յետ երեկոյեան ճաշի իրենց տան մէջ եւս կը մատուցանեն հանգստեան ժամու աղօթքն եւ ապա կը ննջեն ։ Այս բարեպաշտական սովորութիւնը վերջին տարիներս գրեթէ մոռցուած է շատ տուներու մէջ»*



# ԳԼՈՒԽ Բ·

## Ծիսական եղանակք

*Որովհետեւ մարդս կը բաղկանայ ի հոգւոյ եւ ի մարմնոյ, եւ մինչ հոգւով կ'աղօթէ առ Աստուած, հարկ է որ իւր բարեպաշտական զգացումները ցուցնէ նաեւ արտաքուստ ։*

*Աստուածպաշտութեան ծիսական եղանակներուն կը վերաբերին զանազան արտաքին արարողութիւնք, ինչպէս են խաչակնքել, ծնրադրել, գլուխ խոնարհեցնել, երկրպագել, խունկ ծխել, որոնք կը լինին թէ՛ առանձնական եւ թ'է հասարակաց Աստուածպաշտութեան ժամանակ ։ Իսկ խնկարկել յեկեղեցւոջ, օրհնել Խաչիւ եւ Աւետարանաւ, Թափօր ելնել, նախատօնակ կատարել եւ հսկում ընել հասարակաց Աստուածպաշտութեան ժամանակ կը կատարուին ։*

**Խաչակնքել**. — *Թէ՛ առանձնական եւ թէ՛ հասա-*

բակաց Աստուածպաշտութեան ժամանակ՝ խաչակնքելու սովորութիւնն ունիմք ի մեր Նախնեաց ։ Կրօնասէր հաւատացեալը սովորած է իւր ամեն ձեռնարկած գործոց սկիզբը ջերմեռանդութեամբ խաչակնքելու ։

Խաչակնքելը մեր քրիստոնէական հաւատոյ համառօտ դաւանութիւնն ու մաղթանքն է, որով Խաչելոյն Յիսուսի Քրիստոսի իւր կենսատու խաչիւն աշխարհի պարգեւած շնորհքը կը խնդրենք, եւ կը յայտնենք միանգամայն թէ կը հաւատանք յամենասուրբ Երրորդութիւնն՝ ի Հայր եւ յՈրդի եւ ի Հոգի սուրբ ։

**Ծնրադրել**. — Ծնրադրել կը նշանակէ ցուցնել առաջի Աստուծոյ մեր ծայրաստիճան խոնարհութիւնն եւ Անոր բարերար կամաց կատարեալ հնազանդութիւն ։

**Գլուխ խոնարհեցրել**. — Այս կը նշանակէ քրիստոնէավայելուչ հեզութեան, խոնարհութեան արտաքին նշան եւ խոստովանութիւն մեր մեղաց ։

**Երկրպագել**. — Կը նշանակէ կրօնական պաշտօն մատուցանել Աստուծոյ՝ խոնարհ հպատակութեամբ եւ խորին մեծարանօք, զորս պարտիմք ընծայել մեր հոգւոյն բոլոր զօրութեամբ՝ ճշմարտին Աստուծոյ իբրեւ միոյ միայնոյ Արարչին տիեզերաց, որ միայն ունի իրաւունք երկրպագութեամբ պաշտուելու ։

**Խունկ ծխել**. — Մեր բարեպաշտ Նախնիք հայրենաւանդ սովորութեամբ կիրակամուտ երեկոյները իրենց տան մէջ կը ծխէին խունկ, որ նշանակ է աղօթից, եւ մինչ խունկ կը ծխուէր, նոյն տան հաւատացեալ բնակիչք կ՚աղօթէին առ Աստուած իրենց հանգուցեալ ծնողաց ու պարագայից հոգւոց համար ։ Այս աւանդական սովորութիւն Նախնի հաւատացելոց ժամանակ սկսուած կ՚երեւի ։

**Խնկարկել յեկեղեցւոջ.** — *Թէ՛ Մովսիսի ժամանակ եւ թէ՛ յետ Մովսիսի՝ սահմանուեցան արարողութիւնք եւ ծոմապահութիւնք, քահանայք եւ մատուցմունք զոհից եւ խնկոց։ Այս սահմանադրութեամբ քահանայք ամեն առաւօտ եւ երեկոյ կը մտնէին ի Սրբութիւն (Սրբարան) խունկ մատուցանելու համար, եւ քաւութեան մեծ տօնին քահանայապետը կը խնկարկէր իւր բուրվառաւ, երբ կը մտնէր ի Սրբութիւն Սրբութեանց, ուր էր Ուխտին Տապանակը։*

*Խունկն ըստ որում նշան է մեր աղօթից եւ օրհնութեանց, մեր քրիստոնէական եկեղեցւոյ մէջ կը մատուցուի ամեն առաւօտ եւ երեկոյ առ Աստուած։ Իսկ խնկարկել կենաց փայտին, Ս. Աւետարանին և Սեղանին, նաեւ օծեալ պատկերաց, կը նշանակէ ընծայել անոնց մեր յարգանքը զոր կը տածենք մեր սրտին մէջ։ Խնկարկել ժողովրդոց է նշանակ իջման շնորհաց Հոգւոյն Սրբոյ։*

**Օրհնել խաչիւ եւ Աւետարանաւ.** — *Խաչիւ եւ Աւետարանաւ ժողովրդոց վրայ խաչակնքելը կը նշանակէ հայցել ի Տեառնէ օրհնութիւն հաւատացելոց համար։*

**Թափօր ելնել.** — *Թափօր ելնել՝ կը նշանակէ եկեղեցական հանդիսիւ շրջիլ տաճարին չորս կողմը, եւ կամ ելնել յատեան եկեղեցւոյ, կատարելու համար երեւելի տօն մը շքեղագեղ հանդիսիւ կամ թէ անդաստան ընելու, որով կ՚աղօթենք ամենայն Հայոց Հայրապետութեան, երկրիս, անդաստանաց եւ պտղաբերութեան, վանօրէից, անապատաց եւ ամեն բարեպաշտական հաստատութեանց անսասան պահպանման համար, եւ աշխարհիս չորս կողմը բնակող մեր*

*եկեղեցական պաշտօնէից եւ հաւատացեալ ժողովրդոց խաղաղութեան եւ բարօրութեան համար։ Եկեղեցին ի թափօր կ'ելնէ նաեւ երկարատեւ երաշտութեան կամ համաճարակ հիւանդութեան տիրած ժամանակ, խնդրելու համար Աստուծմէ որ երկինք անձրեւէ եւ կամ համաճարակ հիւանդութիւնն անհետանայ։*

Նախատօնակ, — *Նախատօնակ կ'ըսուի երեւելի տօնի մէջ օրուան նախընթաց երեկոյին եկեղեցւոյ առեանը կատարուած հանդիսաւոր ժամերգութիւնը, ներկայութեամբ չուրջառակիր հոգեւոր պաշտօնէից եւ շապկազգեստ դպրաց Ս. խաչիւ, Ս. Աւետարանաւ եւ մոմեղինօք։*

*Տնօրինական եւ Տէրունական տօնի աւուրց նախատօնակին՝ հետեւեալ աւուր օրհնութեան շարականը՝ իբրեւ համբարձիի շարական կ'երգուի. իսկ երեւելի սրբոց տօներուն նախատօնակին հետեւեալ աւուր օրհնութեան եւ հարցի շարականք կ'երգուին իրենց սարօքն։*

Հսկում. — *Կը նշանակէ անցընել գիշերն ընթերցմամբ Ս. Գրոց, աղօթիւք եւ երգովք։*

*Քրիստոնէութեան առաջին դարուց մէջ մեր նախնի հաւատացեալք մեծահանդէս տօներու նախընթաց գիշերներն հսկմամբ կ'անցընէին տաղաւարներու ներքեւ այն ժամանակները՝ յորս Աստուծոյ մատուցանելի պաշտամանց նուիրուած տաճարներ տակաւին չէին կառուցուած, եւ հսկման հետեւեալ օրը կը կատարուէր մեծահանդէս տօնը, այս պատճառաւ մեծ տօնի օրեր կոչուեցան «Տաղաւար»։ Ուստի աւանդական սովորութեամբ Ծննդեան Քրիստոսի Տեառն մերոյ Ս. Ծննդեան եւ Ցարութեան, Այլակերպութեան, ինչպէս*

*նաեւ Ս. Աստուածածնի Վերափոխման եւ Խաչվերացի տօնք կ'ըսուին ցարդ « Տաղաւար » հետեւաբար Հայաստանեայց առաքելական Ս. եկեղեցին այս հինգ տաղաւարաց նախընթաց գիշերը հսկում կ'ընէ ըստ հրահանգի Տօնացուցին ։*

*Հսկումը կը կատարուի մեծ տօնից նախընթաց երեկոյեան հանգստեան ժամէն յետոյ որ կըսուի գիշերապաշտօն եւ կը շարունակուի ցառաւօտեան ժամերգութիւն ։*

*Հսկում կը լինի ընդհանրապէս նորակառոյց տաճարի մը նախընթաց գիշերը կամ երեկոյին ։*

*Հսկում կը լինի նաեւ համաճարակ հիւանդութեան եւ կամ հանրային մեծամեծ տագնապներու ժամանակ. նոյնպէս ծանր հիւանդի առողջութեան եւ բարեպաշտ անձի մը բարի խնդրուածքի մը կատարման համար, Ս. Եկեղեցւոյ կանոնադրած սաղմոսաց, շարականաց, աղօթից եւ Ս. Աւետարանի ընթերցմամբ ։*



## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

---

# ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ

*Տօնակատարութիւն կ'ըսուի Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ փրկագործ տնօրինութեանց եւ կամ երեւելի սրբոց յիշատակը կատարուելուն Աստուծոյ տաճարին մէջ ։*

*Տիեզերաց արարիչն Աստուած վեց աւուր մէջ ստեղծելով համայն տիեզերքը՝ եօթներորդ օրը դադրեցաւ նոր էակներ ստեղծելէ , ուստի նոյն օրը հանգեաւ , օրհնեց եւ սահմանեց նոյն օրն ( հանգիստ ) իբրեւ օր աստուածային պաշտաման . հետեւաբար՝ աստուածապաշտք ի սկզբանէ կը պահէին շաբաթն՝ Աստուծոյ մարդկային ազգին տուած օրինակին համաձայն դադրելով ընդհանուր եւ մասնաւոր գործքերէ , որ միջոց մ'էր յիշելու տիեզերաց ստեղծագործութիւնն եւ անոր նախախնամող Արարիչը ։*

*Մովսիսական օրինաց տուչութեան ժամանակ՝ շաբաթին պահպանութեան պատուիրանին ի Սինա տրուիլն ոչ միայն Հրէից համար էր , այլ բոլոր մարդկային ազգին , որուն կը հրամայէր Աստուած հանգստեան օրը միտքը բերել՝ զանիկայ սուրբ պահելու համար , աշխարհային գործերէ դադրելով եւ հոգեւոր զբաղմամբ միայն անցընելով ։*

*Անցմամբ դարուց եւ ժամանակաց՝ բաց ի շաբաթէ*

— հանգստեան օրէն—Աստուած սահմանեց այլ եւ այլ տօներ Հրէից համար . որպէս զի յաւիտեան անմոռաց պահեն ի նպաստ Իսրայելացւոց եղած երեւելի դէպ-քերուն յիշատակը ։ Այսպէս Զատիկը՝ Իսրայելացւոց Եգիպտոսէն ելնելը , Պէնտէկոստէն՝ Սինայի օրէնսդ-րութիւնը, եւ Տաղաւարահարաց տօնն ի յիշատակ Հրէից քառասնամեայ պանդխտութեանն անապատին մէջ։

Մեր մի , սուրբ , կաթողիկէ եւ առաքելական ե-կեղեցին Հայաստանեայց՝ առաջին անգամ կատարեց Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի Ս . Յարութեան տօնն եօթնեկին առաջին օրը , որ կոչուեցաւ այնու-հետեւ « Կիւրակէ » — Տէրունական օր ։ Քրիստոնեայք առաքելական առաջին դարուն սկսան սուրբ պահել Քրիստոսի յարութեան օրը , իբրեւ յիշատակ լրման քաւութեան գործոյն , որ եղաւ յարութեամբ Աստ-ուածորդւոյն ։

Քրիստոնէութեան տարածման հետ սահմանուեցաւ Տնօրինական եւ Տէրունական տօնի եւ սրբոց յիշա-տակի օրեր , յիշելու համար մեր Փրկչին կատարած հայրակամ տնօրինութիւններն եւ կամ քրիստոնէու-թեան դէմ յարուցուած հալածանաց ժամանակ նահա-տակուած քրիստոնէից հոգեւոր արիութիւնը , եւ ո-րոց տօնախմբութիւնը կը կատարէ եկեղեցին , յիշեց-նելով անոնց փառաւոր արարքն՝ յօրինակ հաւատացե-լոց ։

Թէ՛ տէրունական եւ թէ՛ սրբոց տօներէն ոմանք որոշ ամսաթուոյ մը համաձայն կը կատարուին , ինչ-պէս են Աւետման , Քրիստոսի Ծննդեան , Անուանա-կոչութեան եւ Տեառնընդառաջի, նոյնպէս եւ Ս . Աս-տուածածնի Յղութեան , Ծննդեան եւ Ընծայման տօ-

նական օրերը ։ Կան տօներ՝ որոնք Զատկի տօնի կատարման ամսաթիւէն կախում ունին ։

Յոյն եւ Լատին եկեղեցիք Քրիստոսի Այլակերպութեան տօնն Օգոստոսի վեցին, Ս. Աստուածածնի վերափոխումն տասն եւ հինգին եւ Խաչվերացը Սեպտեմբեր տասն եւ չորսին՝ կը կատարեն անխափան ամէն տարի, եօթնեկին ո՛ր օրն որ պատահի, իսկ Հայաստանեայց Ս։ եկեղեցին Նախայիշեալ երեք ամսաթուոց մերձակայ կիւրակէ օրն կը կատարէ ի պատիւ Այլակերպութեան Քրիստոսի, Վերափոխման Ս. Աստուածածնի եւ Վերացման Ս. Խաչի ։

Հայաստանեայց Ս. Եկեղեցին պահոց օրերն ըստ որում ապաշխարութեան աղօթք, կենդանեաց եւ ննջեցելոց համար հայցուածներ կը մատուցանէ Աստուծոյ, չկատարեր սրբոց յիշատակութիւն, այլ այն տէրունական տօները միայն կը կատարէ, որոնք որոշ ամսաթուոյ մը համաձայն կը կատարուին, թէեւ պահոց օրուան իսկ հանդիպին ։

Բոլոր տօները կը բաժնուին երեք դասակարգի .

Ա. Տնօրինական Տօնք .

Բ. Տէրունական Տօնք .

Գ. Սրբոց Տօնք կամ Յիշատակք ։



# ԳԼՈՒԽ Ա.

## Տնօրինական Տօնք

Այն տօներն որոնք կը վերաբերին Աստուածորդւոյն փրկագործ տնօրինութեանց, զորս ըրաւ Նա մարդոց փրկութեան համար, կ'ըսուին Տնօրինական։

Տնօրինական տօներն են Աւետում, Ծնունդ Փրկչին մերոյ եւ Մկրտութիւն, Անուանակոչութիւն, Տեառնընդառաջ, Ծաղկազարդ, Վերջին ընթրիք Քրիստոսի եւ Ոտնալուայ, Չարչարանք եւ Խաչելութիւն Տեառն մերոյ, Զատիկ-Յարութիւն Քրիստոսի, Համբարձումն, Հոգեգալուստ եւ Այլակերպութիւն։



# Ա.

## Աւետում

Աւետումն՝ որոյ տօնը մեր եկեղեցին կը կատարէ ամեն տարի ապրիլի եօթնին, պատմական կերպով մեր Փրկչին տնօրինութեանց առաջինն է, նոյն օրն եկեղեցին կը յիշեցնէ մեզ Գաբրիէլ հրեշտակապետին գալուստն առ Մարիամ կոյսն եւ անոր տուած աւետիսը, թէ Հոգւոյն Սրբոյ զօրութեամբ զաւակ մը պիտի ծնանի, որ ըստ մարմնոյ չպիտի ունենայ հայր, եւ կու-

*տական ծննդեամբ պիտի լինի մայր ի յաւիտենից խոստացեալ Մեսիային ։*

*Աւետման պահուն կատարուեցաւ Բանին Աստուծոյ մարմնաւորութեան տնօրինութիւնը , որ է Մեսիային յարգանդ Ս. Կուսին իջնելը ։*



## Բ.

## Ծնունդ Փրկչին մերոյ եւ Մկրտութիւն

*Ս. Ծննդեան նախընթաց օրը կ'ըսուի « Ճրագալոյց » (1) որոյ առաւօտեան ժամանակ եկեղեցին Աստուածորդւոյն յաշխարհ եկաւորելուն տօնը կը կատարէ պատշաճաւոր հանդիսիւ ։*

*Երեկոյեան սովորական ժամերգութենէն յետոյ կը կարդացուին Ս. Գրքէն Ծննդոց մի քանի գլուխները Մեսիային Մարդեղութիւնն ու Ծնունդը գուշակող պատմական եւ մարգարէական գրուածքները եւ հուսկ ապա Դանիէլ մարգարէի եւ անոր երեք ընկերաց պատմութեան վերաբերեալ գիրքը , վերջը կը սկսի Սուրբ*

---

[1] Հին ժամանակները քրիստոնեայք վառ մոմեր ի ձեռին, ջահերով եւ լապտերներով կ'անցնէին Ս. Ջննդեան եւ Ս. Յարութեան առաւօտ լուսնալու գիշերը, այս պատճառաւ կոչուած է « Ճրագալոյց » իսկ այժմ ճրագալուցի երեկոյին, ինչպէս Ս. Ծննդեան եւ Ս. Յարութեան առաւօտուն « Լուսաւորեա » անունով, ժողովուրդը ճրագ կը վառէ եկեղեցւոյ մէջ ։

*Պատարագը, որոյ յաւարտ կը կատարուի Նախատօնակ։*

*Տարւոյն հինգ Տաղաւարի նախընթաց երեկոյին «Նաւակատիք» է, ուստի եկեղեցին կ'արտօնէ հաւատացեալները կիսաչափ լուծել պահքը եւ ուտելու կաթեղէն, ձկնեղէն, ձու եւայլ առոնց նման կերակուրներ անոր համար՝ որ եկեղեցին մեծահանդէս տօնին Նախատօնակը կը կատարէ։*

*Խոստացուած Մեսիային Ս. Ծննդեան տօնն ամեն տարի Յունուար 6ին* (1) *կը կատարուի։ Աստուածորդւոյն Ս. Ծնունդը գիշեր ժամանակ նախ յայտնուեցաւ Բեթղեհէմի հովուաց՝ ծագմամբ մեծապայծառ լուսոյն, եւ Քրիստոսի ծննդեան աւետիսը տուող հրեշտակին հետ երկնաւոր զօրաց բազմութեան զԱստուած փառաբանելու երգով։*

*Ս. Ծննդեան տօնի առաւօտեան ժամերգութեան ժամանակ՝ «Փառք ի բարձունս» երգէն յառաջ բեմին վրայ կը կարդացուի մարդացելոյն Փրկչին մերոյ Ծննդեան պատմութիւնն ըստ Աւետարանը, թէ խաղաղութեան իշխանը՝ օծեալ փրկիչ Աստուածը ծնաւ ի Բեթղեհէմ Դաւթի քաղաքին մէջ, ուր պիտի գտնէք զնա որ ի յաւիտենից Աստուած է եւ ի ժամանակին ի*

---

[1] Ի սկզբան քրիստոնէութեան, քրիստոնեայ ազգաց եկեղեցիք Ս. Ծննդեան եւ Մկրտութեան տօնը յունուար վեցին կը կատարէին։ Յետ ժամանակաց Յոյն եւ Լատին եկեղեցիք սկսան ոչ այնքան բանաւոր պատճառաւ Ս. Ծննդեան տօնը դեկտեմբեր 25ին եւ Մկրտութեան տօնը յունուար 6ին կատարել, զոր կը շարունակեն ցայսօր ժամանակի։ Իսկ մեր Հայաստանեայց Ս. Եկեղեցին որ ջերմ աւանդապահ գտնուած է յընթացս դարուց, Ս. Ծննդեան եւ Մկրտութեան տօնը յունուար 6ին կը կատարէ ի միասին։

կուսէ ծնեալ՝ պատեալ խանձարրով եւ ի մսուր եդեալ, նա որ Աստուած եւ մարդ կատարեալ է ։

Յաւարտ Ս. Պատարագին եկեղեցին կը կատարէ Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ Մկրտութեան տօնը « Ջրօրհնենք » անուն յատուկ արարողութեամբ. յիշեցնելու համար մեզ՝ թէ երբ Յիսուս մեր Փրկիչը լրացուց երեսուն տարին, գնաց Գալիլիայէն Յորդանան, ուր կը քարոզէր Յովհաննէս եւ ապաշխարութեան յանձնառուները կը մկրտէր. մկրտուեցաւ Յովհաննէս Կարապետէն, որ կոչուեցաւ յետ այնորիկ Յովհաննէս Մկրտիչ ։ Երբ մկրտուեցաւ Յիսուս, Ս. Հոգին աղաւնակերպ երեւմամբ իջաւ Անոր վրայ, եւ լսուեցաւ յերկնից հայրական ձայնն որ կ'ըսէր. « Դա է որդի իմ սիրելի՝ ընդ որ հաճեցայ » ։ Նոյն պահուն յայտնուեցաւ ամենասուրբ Երրորդութեան խորհուրդը ։

Ջրօրհնէքի արարողութիւնը կը սկսուի այսպէս. դպիրք կ'երգեն « Լոյս ի լուսոյ » շարականը, եւ եպիսկոպոսը կամ երիցագոյն քահանայն բեմին վրայ կը խնկարկէ անոր համար՝ որ արարողութեան մը սկզբնաւորութիւն կը լինի, վերջը կը կարդացուի մարգարէական ու պատմական Հին Կտակարանէն եւ Առաքելական թղթեր. այս պահուս կը լնու քահանայն օրհնութեան ջուրը անօթոյն մէջ. կը կարդացուի Քրիստոսի մկրտութեան պատմութիւնն ընդ Աւետարանը. վերջը այն աղօթքը զոր երկասիրած է Բարսեղ Հայրապետը եւ խաչ մը ջուրը կը ձգուի ։ Յաւարտ աղօթից կ'երգուին հոգեզմայլ տաղեր, ապա ջուրը տեառնագրութեամբ կ'օրհնուի եւ Առաքելոյ աղաւնւոյ շարականի երգեցման հետ եպիսկոպոսը կամ երիցագոյն քահանայն խաչը ջրէն հանելով՝ միւռոնա-

կիր աղաւնիէն կը հեղու ի ջուրն Ս. միւռոն եւ յետ ամենայնի Յովհաննու Մկրտչի նախատօնակը կը կատարուի ։

Ջրօրհնէքի արարողութիւնը կատարելու համար վազուկ ջրոյ մը մօտ երթալու աւանդական սովորութիւնը պահուած է տեղ տեղ, իսկ այն տեղերն յորս վազուկ ջուր չգտնուիր, եւ կամ երթալու դժուարութիւնք կան, նոյն արարողութիւնը կը կատարուի եկեղեցւոյ բեմին վրայ, Ջրօրհնէնքի յատկացեալ չափաւոր մեծութեամբ ընդարձակ անօթոյ մը մէջ ։

---

## Գ.

## Անուանակոչութիւն

Անուանակոչութիւն կ՚ըսուի Ս. Ծննդեան տօնի ութերորդ օրը, յորում Աստուածորդին ըստ մովսիսական օրինաց թլփատուելով՝ կոչուեցաւ Յիսուս, ինչպէս որ հրեշտակն Աւետման օրը հրամայած էր Մարիամու, մեր Փրկիչը յանձն առաւ մտնել ընդ օրինօք, օրինակ ընծայելու համար իւր անձն իրեն հետեւողաց, որ հնազանդին աստուածային օրինաց եւ պատուիրանաց ։



## Դ.

## Տեառնընդառաջ

*Աշխարհի Փրկիչը կատարելու համար Մովսիսական օրէնքը՝ որպէս անդրանիկ Որդի Ս. Կոյս Մարիամու, յետ քառասուն աւուր Ծննդեան տարուեցաւ Երուսաղէմի տաճարը՝ ներկայացնելու համար Տիրոջը եւ Անոր մատուցանելու պատարագ մի զոյգ տատրակ կամ աղաւնւոյ ձագեր ։ Սիմէոն պատուական ծերունին ըստ ցանկութեան սրտին եւ խնդրանաց արժանի եղաւ ընդմանուլն Յիսուս իւր գիրկն առնլու եւ փառք տալով զԱստուած օրհնելու, եւ ըսաւ . « Տէր, արձակեա զիս ի խաղաղութիւն , վասն զի խոստացեալ Մեսիայն՝ Իսրայէլի փառքն եւ հեթանոսաց լոյսը , տեսեղերաց Փրկիչը տեսայ . » Ապա Սիմէոն գոհութիւն մատոյց Աստուծոյ եւ օրհնեց զՅովսէփ եւ զՄարիամ, եւ ի մասնաւորի ըսաւ Մարիամու . « Քու սրտէդ ալ սուր պիտի անցնի ։ »*

*Տեառնընդառաջի տօնը կ՚ուսուցանէ մեզ , թէ ամեն քրիստոնեայ անհատ որ յանուն ամենասուրբ Երրորդութեան մկրտուած է մկրտութեան աւազանին մէջ, ի ձեռն քահանային ընծայուած է տաճարին Աստուծոյ ի ներքին եւ յարտաքին հոգեւոր ծառայութիւն ։*

## Ե.

## Ծաղկազարդ

*Զատկէն, Քրիստոսի Յարութեան տօնէն ութ օր յառաջ եկեղեցին կը կատարէ Աստուածորդւոյն Երիքովէն յաղթական փառօք յԵրուսաղէմ ի կամաւոր չարչարանս եւ ի խաչ երթալու յիշատակը։ Յիսուսի հետ գնացող խուռն բազմութիւնը երբ տեսաւ զայս, յաղթական Թագաւորի արժանավայել պատիւ ընելով Անոր՝ իրենց հագուստներն Անոր անցնելու ճամբուն վրայ կը տարածէին. եբրայեցի ծերք՝ ձիթենեաց ոստեր եւ տղայք արմաւենեաց ճիւղեր ի ձեռին ընդ առաջ ելնելով կ'աղաղակէին եւ կըսէին «Ովսաննա բարձրելոյն», (ով փրկիչ, փրկէ զմեզ)։*

*Նոյն աւուր կարդացուած աւետարաններուն մէջ կը յիշուի Զաքարիա մարգարէի մի կանխասացութիւնը. «Ասացէք դստեր Սիօնի, ահա Թագաւոր քո գայ քեզ հեզ, եւ հեծեալ յէշ եւ յաւանակի իշոյ։» Յիսուսի աշակերտները բերին էշն ու յաւանակը, իրենց Տիրոջը հրամանին համաձայն. վրանին ձորձեր ձգեցին եւ Քրիստոս նստաւ անոնց վրայ։ Եկեղեցւոյ Ս. Հարք մեկնած են իշուն վրայ նստիլն ի նշան Հրէից եւ յաւանակին վրայ ի նշան հեթանոսաց. յաւանակին վրայ ոչ ոք նստած ըլլալը կը մեկնուի հեթանոսաց Աստուծոյ ժողովրդեան մէջ չխառնուիլը։*

*Երբ մտաւ Յիսուս Երուսաղէմի տաճարը, ըստ պատմութեան Խորենացւոյն Աբգար Թագաւորին կողմանէ եկող պատգամաւորք աղաչեցին Փիլիպպոսի տեսնելու*

զՅիսուս եւ իրենց Թագաւորին կողմանէ հրաւիրեցին զնա յԵդեսիա ։ Յիսուս հասկնալով անոնց հրաւէրն եւ տեսնելով միանգամայն որ անոց խնդիրքը կատարելու ժամանակ չկայ, սա պատասխանը տուաւ Յիսուս. « Եհաս ժամ, զի փառաւորեսցի Որդի մարդոյ » եւ ըստ պատմական աւանդութեան իւր անձեռագործ պատկերը յուղարկելով՝ Թովմաս առաքելոյն ձեռքով պատասխանեց, թէ յետ իւր համբարձման աշակերտներէն մին պիտի յղէ բժշկելու համար Աբգարու հիւանդութիւնը :

Ծաղկազարդի ժամերգութիւնը կը կատարուի ըստ հրահանգի Տօնացուցին՝ շարականօք եւ երգովք, զորս մեր երաշնորհ Ս. Հարք յօրինած են Իսրայէլի Թագաւորին յԵրուսաղէմ մտնելու օրուան համար ։

Հայաստանեայց Ս. Եկեղեցին յետ երեկոյեան ժամերգութեան կը կատարէ « Դռնբացէքի » արարողութիւնն, որ Հայոց եկեղեցւոյն միայն յատուկ է ի խորհուրդ կատարածի աշխարհին եւ յաւուր դատաստանի երկրորդ գալստեան Տեառն մերոյ ։ Արարողութեան ժամանակ աւագ խորանի վարագոյրը (1) փակուած է, իբրեւ դուռն արքայութեան երկնից փակուած հանդէպ մեզ մեղաւորացս, ուստի քահանայք եւ դպիրք ի ծունր եկած ի բեմի, եւ ժողովուրդն յատենի եկեղեցւոյ ողբաձայն կ'երգեն . « Բաց մեզ, Տէր . բաց մեզ զդուռն

[1]Հին ժամանակները ժողովուրդը կը կենար եկեղեցւոյ գաւիթը եւ անդ կ'աղօթէր արտաքոյ դրան, եւ երբ «Զողորմութեան քո զդուռն բաց մեզ, Տէր» շարականը կը սկսուէր, ժողովուրդը կը մտնէր յեկեղեցի։ Այժմ Աւագ խորանի վարագոյրը միայն փակուած կը մնայ, մինչեւ «Զողորմութեան քո զդուռն» շարականին սկսելուն։

ողորմութեան, որ ողբալով կարդանք առ քեզ ։ » Ապաշխարութեան ողբաձայն չարականք կը շարունակուին . եւ « Բաց մեզ, Տէր » աղիողորմ ձայնը երկիցս կրկնուելէ յետոյ կը բացուի խորանին վարագոյրը՝ Աստուծոյ երկնահրաւէր ձայնիւը . « Եկայք, օրհնեալք Հօր իմոյ, ժառանգեցէք զպատրաստեալն ձեզ զարքայութիւնն ի սկզբանէ աշխարհի ։ »

Դռնբացէքի արարողութիւնը բարոյականի գործնական դաս մ'է ուսուցանելու համար մեզ, թէ պէտք չէ ձեռքէ թողուլ այն հոգեւոր պատրաստութիւնը, զոր պարտիմք ընել, զարդարելով մեր հոգին առաքինական գործերով, որպէս զի արժանանանք տեսոյն Քրիստոսի եւ յաւիտեան վայելենք բուն կեանքն, որ է անմահութիւն ։



## Զ.

## Վերջին ընթրիք Քրիստոսի եւ Ոտնալուայ

Յիսուս Քրիստոս իւր երկրաւոր կենաց վերջին տարին եւս կերաւ զատկական գառը Մովսիսական օրինաց համաձայն, եւ այս անգամ Երուսաղեմի Սուրբ Սիօն վերնատան մէջ իւր երկոտասան աշակերտաց հետ այն երեկոյին, յորում այլ եւս հասած էր Աստուածորդւոյն փառաւորուելու ժամանակը ։

Յիսուս սեղան նստելու ժամանակ ըսաւ, փափաքելով փափաքեցայ այս պասեքը-Զատիկը ձեզ հետ ուտելու իմ չարչարուելէս առաջ ։

Պասեքի սեղանին վրայ երբ կուտէին, Յիսուս առաւ հացը, օրհնեց եւ տուաւ իւր աշակերտաց՝ ըսելով. « Առէք, կերէք, այս է ՄԱՐՄԻՆ իմ ։ » Նոյնպէս բաժակն առնլով գոհացաւ, օրհնեց եւ տուաւ իւր աշակերտներուն ըսելով. « Արբէք ի սմանէ ամենեքեան, այս է ԱՐԻՒՆ իմ Նորոյ ուխտի ։ Զայս արարէք առ իմոյ յիշատակի ։ »

Քրիստոս մեր զատիկը փոխան զատկական գառին զոհուեցաւ խաչին վրայ մեզ համար, եւ զատկական գառին տեղ իւր ՄԱՐՄՆՈՅ եւ ԱՐԵԱՆ պատարագի հաղորդութեան քաւիչ Ս. Խորհուրդը հաստատեց ։

Յիսուս Պասեքի սեղանին վրայ ծայրագոյն խոնարհութեան ազդոյ օրինակ մ'ալ տուաւ ։ Ընթրիքէն ելաւ, մէջքը փաթթեց մի ղենջակ, կոնքին մէջ լեցուց ջուր, լուաց իր աշակերտաց ոտքերն եւ սրբեց ղենջակաւն, եւ ըսաւ. « Ես ձեր Տէրն ու վարդապետն լինելով՝ ինչպէս որ խոնարհեցայ եւ ձեր ոտքերը լուացի, դուք եւս պարտիք լուալ իրարու ոտքերը ։ »

Քրիստոս խոնարհութեան այս օրինակը տուաւ, ուսուցանելով թէ ճշմարիտ քրիստոնեայ հաւատացեալը խոնարհելու է մինչեւ իսկ իւր թշնամւոյն եւ ատելւոյն առջեւ ։

## Է.

## Չարչարանք եւ խաչելութիւն Քրիստոսի

*Յուդան՝ Յիսուսի աշակերտներէն մին՝ մատնեց իւր վարդապետն եւ Յիսուս Յուդայի վատ մատնութիւնն երեսին տուաւ, եւ երբ Յիսուսի թշնամիք բռնելով զնա տարին գիշերանց ի տուն քահանայապետին, որ մի քանի հարցումներ ընելէ յետոյ յուղարկեց առ Կայիափա քահանայապետն :*

*Յիսուս Քրիստոս Հրէից ազգային ժողովոյն մէջ ընկալաւ դատապարտութեան վճիռը, որով հրեայք չարչարեցին զնա ծեծելով, կափելով, ապտակելով, երեսին թքնելով, կատակներով եւ երգիծանքներով, եւ առաւօտուն ներկայացուցին Պիղատոս դատաւորին որ հանէ զնա ի խաչ : Պիղատոս թէեւ մէկ կողմէ ջանքեր ի գործ դրաւ, որ ժողովուրդը խնդրէ արձակել զՅիսուս, սակայն միւս կողմէն քահանայապետք եւ ծերք ժողովրդեան եւ Հրէից հասարակութիւնը միաձայն կ'աղաղակէին որ հանէ զՅիսուս ի խաչ : Պիղատոս վերջապէս յանձնեց զՅիսուս Հրէից՝ որ խաչուի :*

*Յիսուս ուրբաթ օր ի ժամ երեք ելաւ Գողգոթայի սարն եւ բեւեռեցաւ ի խաչ . որոյ վրայ արտասանած մի քանի խօսքերն են .*

*« Այսօր ընդ իս իցես ի դրախտին » :*

*« Հայր, թող սոցա . զի ոչ գիտեն զինչ գործեն » :*

*« Ահա՛ որդեակ քո : ահա՛ մայր քո » :*

*« Էլի, էլի, լամասաբաքթանի » :*

*« Ծարաւի եմ » :*

*« Ամենայն ինչ կատարեալ է » ։*

*« Հայր ի ձեռս քո աւանդեմ զհոգի իմ » ։*

*Ուրբաթ երեկոյին իններորդ ժամուն ի սեղան խաչին մահուամբ Յիսուսի կատարուեցաւ փրկագործութիւնը, վասն զի Քրիստոս մարդոց մեղաց համար պատարագուելով իւր արեամբ քաւեց մարդոց մեղքը, եւ այսպէս նորին Ադամ հնոյն Ադամայ եւ անոր բոլոր սերնդոց մեղաց համար մեռաւ խաչի մահուամբ ։*



## Ը.

## Զատիկ—Յարութիւն Քրիստոսի

*Քրիստոնեայ հաւատացելոց Զատիկն է այն օրն, յորում աշխարհի Փրկիչն Յիսուս Քրիստոս յարեաւ ի մեռելոց ։ Զատիկն հաստատուեցաւ քրիստոնէից մէջ ի յիշատակ ազատութեան հոգւոյ ի մեռելութենէ մեղաց, արեամբ. անարատ Գառինն Աստուծոյ ։ Յիսուս Քրիստոս արդեամբ իւր չարչարանաց եւ խաչի մահուան՝ ազատելով զմարդկութիւնն սատանայի գերութենէն՝ իւր յարութեամբն մուցուց զմեզ յերկիրն Աւետեաց—յարքայութիւնն երկնից ։*

*Մեր Փրկչին-Աստուածորդւոյն յարութիւնը կ՚ուսուցանէ մեզ, թէ մարդկային ազգի փրկութեան ամենակարեւոր գործը կատարուած է եւ թէ ինչպէս Քրիստոսի մահը կը ցուցնէ Նորա առ մարդկութիւնն ունեցած սիրոյ մեծութիւնը, նոյնպէս Նորա Յարութիւնը կը ցուցնէ թէ Նորա սէրը հասաւ իւր վսեմ նպատակին, այն է փրկութիւն մարդկային ազգին ։*

## Թ.

## Համբարձումն Քրիստոսի

*Յիսուս Քրիստոս յետ յարութեան երեւցաւ նախ իւղաբեր կանանց, յետոյ աշակերտաց եւ ապա հինգ հարիւրէ աւելի հաւատացելոց, ցուցուց անոնց ամենուն թէ արդարեւ կենդանի է. ինքը, եւ քառասներորդ օրը տանելով զանոնք Ձիթենեաց լեռը, եւ օրհնելով՝ անոնց առջեւ համբարձաւ յերկինս, ուր պիտի մնայ մինչեւ որ գայ միւս անգամ վերջին օրը դատելու զկենդանիս եւ զմեռեալս, եւ աստուածային փառօք նստաւ ընդ աջմէ Հօր Աստուծոյ։*

—∘∘∘∘∘—

## Ժ.

## Հոգեգալուստ.

*Հոգեգալուստ կը նշանակէ Հոգւոյն Սրբոյ գալուստը, որ ըստ անսուտ խոստման Փրկչին մերոյ Զատկէն յիսներորդ օրը որ կ՚ըսուի Պենտեկոստէ, ի վերնատան ժողովեալ հաւատացելոց վրայ իջաւ եւ հանգեաւ հրեղէն լեզուաց նմանութեամբ։*

*Իսրայէլացիք Պասեքի յիսներորդ օրը կը կատարէին Պէնտեկոստէի տօնն ի յիշատակ տուչութեան տասնաբանեայ պատուիրանաց: Հայաստանեայց Ս. եկեղեցին Զատկին յիսներորդ օրը կը կատարէ Հոգւոյն սրբոյ գալստեան տօնը, յորում հաստատուած է Նոր-Ուխտի տնտեսութեան քրիստոնէական եկեղեցւոյ հիմը։*

Պէնտէկոստէի օրը մեր եկեղեցիք կը զարդարուէին վարդերով, որպէս նուիրումն Նորահաս ծաղկանց տաճարին Աստուծոյ, ինչպէս Հրէայք այս տօնին կը մատուցանէին Աստուծոյ իրենց ցորենի հնձոց երախայրին։

Հոգեգալստեան տօնը մինչ ցերկոտասաներորդ դարը երեք օր միայն կը կատարուէր եւ կ՚ըսուէր «Տօն ամենասուրբ Երրորդութեան»։ Ներսէս Շնորհալի հայրապետը Հոգեգալստեան որոյ առաջին երեք պատկերներն երկասիրած էր, Մովսէս Խորենացի յօրինեց վերջին չորս պատկեր շարականներն եւ սահմանեց եօթն օր կատարել Հոգեգալստեան տօնը։

Մեր եկեղեցեաց մէջ սոյն տօնի առաջին օրը Ս. Պատարագի «Հայր երկնաւոր, Որդի Աստուծոյ եւ Հոգի Աստուծոյ» երգերէն առաջ կը կարդացուին աղօթքներ ուղղեալ առ ամենասուրբ Երրորդութիւնն Հայր եւ Որդի եւ Հոգի Սուրբ, զորս յօրինած է Ս. Յովհան Օսկեբերան։

Սոյն տօնի առաջին աւուր երեկոյին յետ կանոնական ժամերգութեան կը կարդացուի Ս. Ներսէսի Լամբրոնացւոյ երկասիրած ճառը «Ստիպիմ ի սիրոյ»։

---

## ԺԱ.

### Վարդավառ.

Վարդավառը չորս հազար տարուան տօն է, զոր համօրէն Հայք այնքան տարիներ տօնեցին բագիններբը զարդարելով վարդիւք, ուր սակս եւ այս տօն կոչուած է «Վարդավառ»։

Այս տօնի օրն է Նաւասարդ ամսոյ առաջին օրը, մեզ՝ Հայոցս ամանորն էր ։ Ս. Գրիգոր Լուսաւորիչ հայրն մեր սահմանեց նոյն օրը կատարել Քրիստոսի Տեառն մերոյ Պայծառակերպութեան տօնը, թողլով նաեւ անխափան կատարել Վարդավառի ազգային աւանդական տօնն ի յիշատակ Ջրհեղեղին ։

Պայծառակերպութիւն կամ Այլակերպութիւն կ'ըսուի Քրիստոսի Տեառն մերոյ Թափոր լերան վրայ կերպարանքին եւ հանդերձից ի վեր քան զբնութիւն փառաւոր, փայլուն եւ սպիտակ երեւիլը, և նոյն պահուն լուսաւոր ամպի մը հովանի լինելը Անոր վրայ, և հայրական ձայնին լսուիլը, թէ «Դա է Որդի իմ սիրելի, ընդ որ հաճեցայ, Դմա լուարուք»։ Այս երկնային ձայն վկայեց Քրիստոսի մեսիայութեան եւ աստուածութեան, որով միանգամ եւս յայտնուեցաւ ամենասուրբ Երրորդութեան խորհուրդը ։

Յիսուս Թափոր լեռն իւր աստուածային փառքը յայտնելու ժամանակ ներկայ էին Պետրոս, Յակովբոս եւ Յովհաննէս ։ Միեւնոյն ժամանակ Մովսէս և Եղիա մարգարէք կը խօսէին Յիսուսի հետ Անոր քաւիչ մահուան վրայ ։ Այն լոյսէն եւ ձայնէն սարսափահար եղան ներկայ աշակերտք եւ ինկան իրենց երեսաց վրայ ։ Երբ Յիսուս վեր վերցուց զանոնք, տեսան որ այն աստուածային տեսիլը աներեւութացած էր ։

Վարդավառի առաջին աւուր շարականն յօրինած է Մովսէս Խորենացի, իսկ երկրորդ եւ երրորդ աւուրց պատկերներն Ս. Ներսէս Շնորհալի ։ Վարդավառի առաջին աւուր երեկոյեան ժամերգութենէն յետոյ կը կարդացուի մի աղօթք, զոր Պատմագիր Եղիշէ Վարդապետն Եկեղեցւոյն Հայաստանեայց, երկասիրած է զայլակերպութենէ Քրիստոսի ։

# ԳԼՈՒԽ Բ·

## Տէրունական տօնք·

*Տէրունական տօնք կ'ըսուին Ս. Կոյս Աստուածածնի Յղութեան, Ծննդեան, Ընծայման եւ Վերափոխման, ինչպէս նաև Ս. Խաչի և Եկեղեցւոյ տօներն անոր համար՝ որ Քրիստոսի Տեառն մերոյ անարատ ծնողին Ս. Կոյս Մարիամու, իւր կենսատու խաչին եւ իւր հաստատած եկեղեցւոյն յիշատակութիւնն ընելու համար սահմանուած տօներ են,*



## ՅՕԴՈՒԱԾ Ա.

## Տօնք Ս. Աստուածածնի·

### *Յղութիւն Ս. Կուսին յԱննայէ*

*Աննա եւ նորա այրն Յովակիմ բարեպաշտ ամուսինք որոնք անզաւակ էին, խնդրած են որ Աստուած օրհնէ իրենց ամուսնութիւնն, և պարգեւէ մի զաւակ, զոր Աստուծոյ տաճարին նուիրել կը խոստանային։ Աստուած կատարեց նոյն բարեպաշտ ամուսնոց խնդրուածքը, ուստի եւ Աննա յղացաւ մարդկային ազգի Փրկչին մայր լինելու զաւակը։*

*Եկեղեցին ամեն տարի կը կատարէ Ս. Կուսին*

յղութեան տօնն Դեկտեմբերի 9 ին կանոնական ժամերգութեամբ և մատուցմամբ Ս. Պատարագի։

---

## Ծնունդ Ս. Կուսին յԱննայ.

Աննա կին Յովակիմայ ի ժամանակին ծնաւ իւր ցանկացած զաւակը, որ անուանեցաւ Մարիամ, յորմէ պիտի ծնանէր Յիսուս արդարութեան արեգակը։

Եկեղեցին ամեն տարի Սեպտեմբեր 8 ին կը կատարէ Ս. Կուսին Ծննդեան տօնը՝ կանոնական ժամերգութեամբ և մատուցմամբ Ս. Պատարագի։

---

## Ընծայումն Ս. Կուսին ի Տաճարն.

Բարեպաշտ ծնողքը սնուցին զՄարիամ և կրթեցին զնա աստուածպաշտութեան նախնական կարեւոր գիտելեօք. և երբ Մարիամ լրացուց երեք տարին, նը ։ ուխրուեցաւ Տաճարին Աստուծոյ ծառայութեան։ ուր զարգացաւ սրբութեամբ և աստուածահաճոյ վարուք։

Եկեղեցին ամեն տարի Նոյեմբեր 21 ին կը կատարէ Ս. Կոյս Մարիամու երից ամաց Ընծայումն ի Տաճարն՝ կանոնական ժամերգութեամբ և մատուցմամբ Ս. Պատարագի (1)։

(1) Ս. Աստուածածնի այս երեք տօներուն մեր Ս. եկեղեցեաց մէջ նախատօնակ կը լինի. նախատօնակին Ս. Աստուածածնի ծննդեան վրայ Վարդան վարդապետի երկասիրած «Որ նախ իմաց» շարականը կ'երգուի իւր սաբօք. եւ տօնին օրերը «Երգեցէք որդիք Սիովնի» շարականը իւր սաբօք, զոր հեղինակած է Յակոբ Կլայեցին.

## Վերափոխումն Ս. Աստուածածնի.

---

Ս. Կոյս Մարիամ Աստուածածին որքան որ վիշտ զգաց ի տեսիլ մահուան իւր Միածին Որդւոյն ի Խաչին, այնքան և առաւել հոգւով ցնծացաւ իւր երկրաւոր կենաց վախճանի օրը. վասն զի ինքն Յիսուս Քրիստոս իջաւ յերկնից ի փոխումն մօր իւրոյ, որ ի տես փառաց աստուածութեան իւր Որդւոյն կ՚ըսէ «Ընկալ Տէ՛ր, զհոգի իմ»։

Առաքեալք և Ս. Կուսանք հոգևոր երգերով տարին Տիրամօր մարմինը թաղելու չիրմին մէջ, ուր և ամփոփուեցաւ նորա մաքրական մարմինը։ Ըստ աւանդական պատմութեան Բարթուղիմէոս առաքեալ նը կրնալով ներկայ գտնուիլ յուղարկաւորութեան և թաղման Տիրամօր Ս. Կուսին՝ յանկութեամբ կը խնդրէ գերեզմանին բացումը վերջին անգամ տեսնելու համար կուսութեան պարծանք եղող Ս. Կուսին երեսը։ Կը բացուի գերեզմանը և չգտնուիր սակայն անոր մարմինը (¹)։

Յիսուս Քրիստոս վերափոխեց իւր մայրն յերկինս ի վարձ այն անբիծ կենաց, զոր վարեց Ս. Կոյսն այս աշխարհի մէջ, անյաղթ մնալով չարին փորձութիւններէն։

---

]1] Ս. Աստուածածնի վերափոխման տօնի առաջին աւուր «Այսօր ժողովեալ» շարականը յօրինած է Մովսէս Խորենացի. իսկ երկրորդ եւ երրորդ պատկերները հեղինակած է Ս. Ներսէս Շնորհալի հայրապետը։

## ՅՕԴՈՒԱԾ Բ.

## Տօնք Ս. Խաչի

Ս. Խաչի տօներն են Խաչվերաց, Գիւտ Ս. Խաչի, Երեւումն Ս. Խաչի, յայտնութիւն Ս. Խաչի ի լերինն Վարագայ.

Խաչվերաց. — Երբ Կոստանդիանոս Թագաւորի մօր Հեղինեայ կրօնասիրական ոգւով ի գործ դրած ջանիւք Ս. Խաչը գտնուեցաւ Երուսաղէմի մէջ, Մակարիոս Պատրիարքն բարձրացուց զսուրբ Խաչն ի տես ժողովրդեան, որ երկրպագեց անոր ամենայն ջերմեռանդութեամբ։ Այս բարձրացումն կոչուեցաւ «Խաչվերաց»։

Քրիստոսի 622 Թուականին Պարսից Խոսրով Թագաւորն Երուսաղէմը նուաճելովը Ս. Խաչը գերի տարուեցաւ։ Հերակլ կայսեր ժամանակ 622 Թուականին Սեպտեմբեր 14 ին վերադարձաւ Ս. Խաչը մեծ հանդիսիւ և դրուեցաւ Երուսաղէմի Տաճարին մէջ, և սահմանուեցաւ այն ժամանակ Խաչվերացի տօնը կատարել ամեն տարի։

Խաչվերացի առաւօտուն կանոնական ժամերգութիւնը կը կատարուի, Հանգստեան շարականի տեղ «Այսօր անճառ» երգն ըսելով, և ի տեղի Հանգստեան Աւետարանի՝ Չարչարանաց և Խաչելութեան Աւետարան կարդալով և ապա Օրհնութեան շարականը, զոր հեղինակած է Ս. Իսահակ Ձորափորեցի Կաթողիկոսը (1)։

[1] Իսահակ Ձորափորեցի Կաթողիկոսը երկասիրած է Խաչի շարականները, որոց իմաստները շատ վսեմ են, ինչպէս եւ Ս. Խաչին Նաւակատեաց շարականները։

Ցաւարտ առաւօտեան ժամերգութեան կ'երգուի «Խաչի քո Քրիստոս, երկրպագանեմք»։ Այս երգն առաջին անգամ Ցակոբոս առաքեալ Տեառն եղբայր երգեց, զոր ի վերջոյ Սահակ Կաթողիկոսն Հայոց ընդարձակեց, և հրամայեց երգել, և մինչ ցայսօր ժամանակի Հայաստանեայց եկեղեցին Խաչվերացի Կիւրակէ առաւօտուն և իրեկոյին, ինչպէս նաև Աւագ Ուրբաթ, Շաբաթ և Զատկին օրը կ'երգէ «Խաչի քո Քրիստոս, երկրպագանեմք»։

Խաչվերացի արարողութիւնն երեկոյեան ժամերգութեան ժամանակ կը կատարուի, յորում եպիսկոպոսը կամ քահանայներէն երիցագոյնն զգեստաւորեալ՝ քահանայք շուրջառազգեստ և դպիրք շապիկներով Ս. Խաչի և Ս. Աւետարանաւ և մոմեղինօք կ'ելնէ ի թափօր և տաճարին չորս կողմը բարձրացնելով զՍ. Խաչն կ'օրհնէ աշխարհիս չորս կողմը բնակող եկեղեցական պաշտօնեայները, ժողովուրդը, վանքերը և բոլոր բարեպաշտական և մարդասիրական հաստատութիւնները։

**Գիւտ Ս. Խաչի.** Ս. Խաչի գիւտը տեղի ունեցաւ 327 թուականին ի ձեռն Դշխոյ Հեղինեայ, որ գնաց յԵրուսաղէմ յուխտ տնօրինական Ս. տեղեաց, ուր յաջողեցաւ գտնել տալու Կենաց փայտը, որ դրուեցաւ Ս. Յարութեան տաճարին մէջ. և սահմանուեցաւ ամեն տարի կատարել, տօն «Գիւտ Խաչի» անուամբ, որ և Խաչվերացի եօթներորդ կիւրակէ օրը կը կատարուի։

**Երեւումն Ս. Խաչի.** — Երբ մեր եկեղեցին կը տառապէր իւր արտաքին թշնամիներէն, յանկարծ մի հրաշք տեղի կ'ունենայ Երուսաղէմի մէջ՝ ի տես ա

*հասարակ քրիստոնէից, նաեւ հրէից և հեթանոսաց։ Քրիստոսի Ս. Խաչը 351 թուականին կ'երեւի երկնից վրայ Գողգոթայէն դէպ ի Ձիթենեաց լեռը տարածուած և նոյն սքանչելի երեւումը կը տեւէ մի քանի ժամ։ Երուսաղէմի Կիւրեղ եպիսկոպոսը Ս. Խաչի երեւման պատմութիւնը կը գրէ և կը յղէ ի Կոստանդնուպոլիս առ Կոստանդ կայսրն։*

*Ս. Խաչի երեւման տօնը կը կատարուի Զատկի Հինգերորդ Կիւրակէին, յորում գիշերապաշտօնը՝ Ցարութեան, և առաւօտեան ժամերգութիւնը Խաչի շարականօք կը տօնուի. եւ նախ քան զԱնդաստանն կը կարդացուի Կիւրեղ եպիսկոպոսի առ Կոստանդ կայսրն յղած գիրն՝ իբրեւ թուղթ վկայութեան ի յիշատակ նոյն հրաշից որ գործուեցաւ յԵրուսաղէմ։*

Վարագայ Ս. Խաչ. — *Ըստ տոհմային եկեղեցական աւանդութեան Ս. Հռիփսիմեանց խմբէն ոմանք բնակած են Վարագայ լեռը. ուր առ ահի հալածանաց՝ նոյն կուսանք թաղած ըլլալու են Կենաց փայտի մի մասը, զոր ունէին իրենց հետ։ Թոդիկ անուն ճգնաւորն որ Վարագայ լերան գագաթը կ'ապրէր ճգնողական կենօք, տեսաւ տեսիլքին մէջ որ տասներկու լուսեղէն սիւներով տաճար մը շինուեր է լերան քարաժայռին ծայրը, եւ ի միջի՝ Ս. Խաչի նշանը, որ յանկարծ բարձրանալով կ'երթայ տաճարին սեղանը։*

*Ճգնաւորը կը մտնէ յեկեղեցին եւ հաւատացեալ ժողովուրդն անոր հետ կ'երկրպագեն Ս. Խաչին, եւ ելնելով խաչափայտին բարձրանալու տեղը՝ կը տեսնեն խաչափայտի մասը.*

*Այս ժամանակ 653 թուականին = Ներսէս Գ. Շինող մականուանեալ Կաթողիկոսը Խաչափայտի մի մա-*

սին հրաշալի յայտնութիւնը լսելով, եւ հաւաստի քըննութեամբ ստուգելով՝ կը սահմանէ տօն կատարել ամ ըստ ամէ, եւ ինքն Ներսէս Գ. առաջին անգամ իւր յօրինած շարականն երգեց «Նշանաւ ամենայաղթ Խաչիւդ քո, Քրիստոս, պահպանեա զմեզ յաներեւոյթ թշնամւոյն»։

Ս. Խաչի այս տօնն որ Խաչվերացի տօնէն տասն եւ հինգ օր ետքն եկած կիւրակէին կը կատարուի, մեր Հայաստանեայց Ս. եկեղեցւոյն միայն յատուկ է։

# ԳԼՈՒԽ Գ.

## Սրբոց Տօնք կամ Յիշատակք

Քրիստոնէական եկեղեցին Տնօրինական եւ Տէրունական տօներէն զատ՝ կը կատարէ նաեւ այն ամեն սրբոց տօնը կամ յիշատակը, որոնք վարեցին իրենց երկրաւոր կեանքն ըստ պատուիրանաց մեր Փրկչին, եւ երկնաւոր վարդապետին սիրոյն համար զոհեցին իրենց անձը, թափելով իրենց արիւնը քրիստոնէական ճշմարիտ եւ սուրբ հաւատոյ համար։

Հայաստանեայց եկեղեցին կ'ուսուցանէ մեզ թէ քանի դասակարգ կայ սրբոց. երբ կարդանք «Քրիստոս Աստուած մեր» մաղթանքը՝ որով կը յիշատակենք մարգարէից, առաքելոց, հայրապետաց, վարդապետաց, մարտիրոսաց, ճգնաւորաց, կուսանաց եւ երկնային զօրաց անուանքը։

*Մարգարէք են Հին Կտակարանի տնտեսութեան ժամանակ մասնաւոր պաշտօնեայք Եհովայի, զորս կը յարուցանէր Աստուած եւ կը յղէր ճանչցնելու մարդոց պարտքը եւ յայտնելու իւր կամքը։*

*Առաքեալք են քրիստոնէական տնտեսութեան տեսուչները զորս Քրիստոս յուղարկեց ի քարոզութիւն Ս. Աւետարանի։*

*Հայրապետք են եկեղեցւոյ պայծառութեան եւ բարեզարդութեան հսկելու, Նորահնար մոլորութիւններէ պահպանելու եւ եկեղեցական խնդրոց վերաբերեալ գործերը վարելու ի պաշտօն կոչուած հոգեւոր հովուապետք եւ հովիւք։*

*Վարդապետք են բանին կենաց քարոզք եւ ժիր մշակք ժողովրդեան լուսաւորութեան, որոց համար գրաւոր երկասիրութիւններ ըրած են յօգուտ եկեղեցւոյ։*

*Մարտիրոսք՝ քրիստոնէական Ս. կրօնի համար մարտիրոսական մահուամբ մեռնող անձնաւորութիւններ.*

*Ճգնաւորք՝ աշխարհային ամեն վայելչութիւններէ կամաւ հրաժարող և անապատական կեանք վարող անձեր։*

*Կուսանք՝ իգական սեռէ կուսական կենօք եւ սրբութեամբ Քրիստոսի նուիրուած անձինք.*

*Երկնային զօրք՝ անմարմին հրեշտակներ են, որոնք մարդկային ազգի պահապանք են եւ բարեխօսք առաջի ամենակալին Աստուծոյ։*

*Ասոնցմէ զատ՝ կան սրբասէր քահանայք, բարեպաշտ իշխանք եւ այլն, որոնք եկեղեցւոյ մատուցած ծառայութեամբ եւ օրինակելի բարեպաշտութեամբ գերազանցապէս փայլած են։*

Կան նաեւ խոստովանողք, որոնք քրիստոնէական Ս. կրօնի համար թէեւ նահատակուած չեն, սակայն մարտիրոսաց դասակարգէն կը համարուին իրենց կրած սաստիկ եւ դառն տանջանաց համար, ինչպէս է Ս. Գրիգոր Լուսաւորիչ Հայրն մեր։ Իսկ նահապետք մարգարէից հետ խառն կը յիշուին։

Սրբոց յիշատակը տօնելու համար իւրաքանչիւրին ուրոյն ուրոյն շարականներ յօրինուած չկան։ Նմանօրինակ գործերով փայլող եւ բարի խոստովանութեամբ մեռնող սրբոց համար շարականներ հեղինակուած են եկեղեցւոյ նախնի վարդապետներէն, որոնք կ՚երգուին, քանի անգամ որ մի եւ նոյն դասակարգէն սրբոյ մը յիշատակը կատարել հարկ լինի։

Եկեղեցւոյ հոգեւոր գերագոյն իշխանութիւնը՝ ազգային-եկեղեցական ժողովն երբեք դասակարգի բաժնած է բոլոր սուրբերը:

Կան սուրբեր, որոնց անուանք կը յիշատակուին միայն «Յայսմ աւուր» գրքին մէջ։

Կան սուրբեր, որոց յիշատակը կը կատարուի եկեղեցւոյ մէջ՝ կանոնական ժամերգութեան ժամանակ, եւ կ՚ըսուին տօնելի սուրբք։

Եւ կան դարձեալ այնպիսի սուրբեր, որոց փառքն՝ իրենց արդեանց եւ արժանաւորութեանց համեմատ, «Աստղ քան զաստղ առաւել է փառօք,» քան զայլոցն առաւելութիւն ունենալուն, անոնց յիշատակը նախատօնակաւ, երգեցմամբ յատուկ շարականաց եւ մատուցմամբ Ս. պատարագի կը կատարուի։



# ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆՔ

*Կիւրակէից եւ շաբաթամէջ գլխաւոր տօնից սկսեալ*

*ի տարեգլխոյ մինչ ցԶատիկ ,*

---

## Կաղանդ եւ Տարեմուտ

*Կաղանդ կը նշանակէ բարձրաձայն գոչումն ։ Հռովմայեցւոց ժամանակ չաստուածոց պաշտօնեայներէն մին կը հսկէր լուսնոյ ծննդեան , երբ լուսինն զգալի կ'երեւէր , պաշտօնեայն բարձրաձայն գոչելով կ'ազդարարէր զոհարար քրմին որ մատուցանէ սովորական զոհն ի պատիւ ծննդեան լուսնին ։*

*Հրեայք եւս մասնաւոր պատիւ կ'ընէին ամեն ամսոյ առաջին օրուան , որ կը հրատարակուէր ի ձայն փողոյ ; եւ Մովսէս յատուկ զոհեր սահմանած էր ։ Կը թուի նաեւ որ ժողովուրդը մարգարէից այցելութիւն կ'ընէր ամսագլուխներուն եւ անոնց ընծայներ կը տանէր , եւ իւրաքանչիւր տուն ընտանեկան ուրախութիւն կը կատարէր ։*

*Հայաստանեայց եկեղեցին կը տօնէ տարւոյն առաջին ամսամուտը միայն անոր համար՝ որ մեր Փրկչին Ծննդեան թուականին առաջին ամսոյն առաջներորդ օրն է ։ Ուստի Փրկչեան Ծննդեան ամանորը չաբթուան ո՛ր օրն ալ հանդիպի , եկեղեցին աւուր պատշաճի*

ժամերգութեամբ եւ Ս. Պատարագի մատուցմամբ կը տօնէ ։

## Տօն Ծննդեան Ս. Յովհաննու Կարապետի

Յիսուսի Քրիստոսի Անուանակոչութեան տօնէն յետոյ՝ կը կատարուի Յովհաննու յառաջընթաց Կարապետի ծնունդը, որ եղաւ իբր վեց ամիս յառաջ քան զԾնունդ մեր Փրկչին ։ Յովհաննէս անցուց իւր երիտասարդութեան ժամանակն անապատին մէջ, եւ ապա երեւցաւ իբրեւ լրումն մարգարէից եւ իբրեւ սկիզբն առաքելոց, որ քարոզեց համարձակ, յանդիմանելով ժողովրդոց մեղքը՝ ընդունելու համար մկրտութիւն ապաշխարութեան, իբրեւ պատրաստութիւն յայտնութեան շնորհաց Քրիստոսի ։ Եկաւ աշխարհի Փրկիչն ի Գալիլէէ ի Յորդանան եւ մկրտեցաւ ի Յովհաննէ՝ յօրինակ հնազանդութեան պատուիրանաց Աստուծոյ. եւ Յովհաննէս մկրտելով զՅիսուս՝ կոչուեցաւ Յովհաննէս Մկրտիչ ։

Յովհաննէս Կարապետի ծննդեան տօնէն ետքը մինչեւ ի Բուն Բարեկենդան եկած կիւրակէները տէրունական տօներ են միայն, յորս Քրիստոսի Յարութեան յիշատակը կը կատարուի եկեղեցեաց մէջ։

## Կիւրակէ Բարեկենդան Առաջաւորաց Պահոց

Բարեկենդան կը նշանակէ մարդկային բնութեան յատուկ եւ վայելուչ խրախութիւն ընելու օր ։

Առաջաւորաց կ'ըսուի այն հնգօրեայ պահքը [1], զոր սահմանեց Ս. Գրիգոր Լուսաւորիչ ի հեթանոսութենէ ի քրիստոնէութիւն դարձող եւ մկրտուելու ցանկացող անձանց համար ։

Այս պահոց հինգերորդ օրը կը կատարուի Յովնան մարգարէի յիշատակը, եւ կը կարդացուի Ներսէս Շնորհալւոյ երկասիրած Նինուէացւոց շարականը եւ մարգարէին քարոզած ապաշխարութեան մասին գրուածները, որոց մէջ կը յիշուի մարգարէին ի փոր կէտին երեք ցորեկ եւ երեք գիշեր մնալը, որ է օրինակ եռօրեայ թաղման մեր Փրկչին ։

## Տօն Ս. Ղեւոնդեանց Քահանայից.

Ղեւոնդեանց քահանայից տօնը կը յիշեցնէ մեզ, թէ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի Ս. Աւետարանի սրբասէր հոգեւոր պաշտօնեայք իրենց անձն օրինակ հանդիսացուցին ժողովրդեան, որ ամեն պարագայի մէջ հաւատարիմ մնան իրենց մայրենի եկեղեցւոյն ։

## Տօն Ս. Վարդանանց Զօրավարաց.

Ս. Վարդան Զօրավար իւր ճշմարիտ կրօնասէր ընկերներովը, հեթանոսութեան ժամանակ՝ վասն պաշտպանութեան քրիստոնէական հաւատոյ նահատակուեցան, եւ պահեց մեր Ս. եկեղեցւոյ գոյութիւնը ։

[1] Առաջաւորաց հնգօրեայ պահքը որ Ս. Գրիգոր Լուսաւորչի ժամանակէն սահմանուած է, անգիտութեամբ կը կոչուի ցայսօր ժամանակի Ս. Սարգսի պահք ։

*Վարդանանց նահատակութիւնն օրինակ է, որ եկեղեցական հարք եւ ժողովրդականք համերաշխ ոգւով պահեն եկեղեցական միութիւնը ։*

*Վարդանանց տօնի օրը յիշատակ է Մեռելոց եւ տօն ազգային ։*

### Տիեզերական Ժողով Կոստանդնուպոլսոյ.

*Հայաստանեայց եկեղեցին ամեն տարի Բուն Բարեկենդանի նախընթաց օրը–շաբաթ՝ կը տօնէ Կոստանդնուպոլսոյ Տիեզերական Ս. Ժողովը* (1), *որ գումարուեցաւ* 381 *թուականին, հերքելու համար Մակեդոնի եւ բոլոր հոգեմարտ աղանդաւորաց հերետիկոսութիւնը ։*

*Կոստանդնուպոլսոյ Տիեզերական Ս. Ժողովը համաձայն ուղղափառ դաւանութեան քրիստոնէական հաւատոյ՝ միանգամ եւս վճռեց եւ յայտարարեց, թէ «Հոգին Սուրբ Տէր է, եւ կենդանարար, որ ի Հօրէ ելանէ եւ իսկակից եւ էակից է Հօր եւ Որդւոյ ։*

### Բուն Բարեկենդան.

*Բուն Բարեկենդան*(2) *կ'ըսուի քառասնորդական մե–*

---

[1] Մեր եկեղեցին երեք Տիեզերական Ս. Ժողովոց տօնը կը կատարէ յառաջ քան զՊատարագն «Մանկունք» ի շարականի սկսման՝ փակելով սեղանի վարագոյրը, եւ «Ո՛վ հրաշալի նախահարք» շարականի երգով նզովելով զԱրիոս եւ զՆեստոր, զՄակեդոն եւ բոլոր աղանդաւորները, եւ «Ի Ս. Երրորդութենէ ծանեաք» շարականաւ, յորում բեմին վրայ խնկարկութիւն կը լինի, կը քարոզէ եկեղեցին իւր ուղղափառ վարդապետութիւնը ։

[2] Բարեկենդան կ'ըսուին շաբաթապահոց նախընթաց կիւրակէ օրերը-

*ծի Պահոց առաջին կիւրակէն, որ ըստ քրիստոնէական եկեղեցւոյ կ'ողջունէ յառաջիկայ Մեծ Պահքը, որ ապաշխարութեան օրեր են։ Նոյն օրը կը տեսնենք եկեղեցւոյ խորանը փակուած եւ վարագուրաւ սեղանը ծածկուած, որ օրինակ է նախածնողաց արտաքսման ի Դրախտէ։*

*Թէ' Բուն Բարեկենդանի եւ Թէ' մեծ Պահոց բոլոր շաբաթ եւ կիւրակէ օրերը փակեալ խորանաւ կը մատուցուի Ս. Պատարագ։*

*Բուն Բարեկենդանի կիւրակէ աւուր կարդացուած Եսայեայ մարգարէական գրուածքէն կ'իմանանք, թէ Աստուած իրեն հաճելի չեղած պահքը չընդունիր, այլ կ'ուզէ որ մարդիկ քաղցելոց՝ հաց տան եւ անտէր աղքատները կերակրեն, սուրբ օրերը մարդիկ չկատարեն իրենց կամքը եւ բարկութեան խօսք բերնէ չհանեն եւ այլն։*

*Պօղոս առաքելոյն առ Հռովմայեցիս գրած առաքելական Թղթէն կը խրատուինք, որ խաւարի գործքերն ի բաց Թողունք, զգաստութեամբ չրջինք եւ լաւ գիտնանք Թէ մեր եղբայրը դատելու իրաւունք չունինք, եւ Թէ իւրաքանչիւր ոք իւր անձին համար պատասխան պիտի տայ Աստուծոյ, եւ զգուշանանք առաւել մեր եղբայրը գայթակղեցնելէ։*

*Իսկ Ճաշու Ս. Աւետարանը մեր ուշադրութիւնը կը հրաւիրէ սա կէտերուն վրայ, Թէ պարտիմք առանց ո եւ է ցոյցի ողորմութիւն տալ, զուարթ երեսօք պահք պահել եւ անտես ի մարդկանէ աղօթել առ Աստուած։*

*Այս հոգեկան կրթութիւնք Թէեւ ամեն ժամանակ կարեւոր են մեզ, սակայն ապաշխարանաց օրերն ար-*

ժամանակէս կատարել կը պատուիրէ մեր Տէրը եւ կ'ա-
ւանդէ մեզ աղօթքի նիւթը, որպէս զի ըստ այնմ
խնդրենք մեր Տիրոջմէն մեր հոգւոյ եւ մեր մարմնոյ
պէտքերը, զորս մեր Իրմէ խնդրելէ առաջ գիտէ լիո-
վին։

## Բ. Կիւրակէ Քառասնորդական Պահոց.

Ա. Պատարագի Ճաշու գրքի Եսայի մարգարէու-
թենէն կը հասկնանք, թէ այն ժողովրդոց հետ որ
աստուածպաշտութեամբ ճշմարիտ արդարութեան գոր-
ծեր կը գործէ, Աստուած կը հաշտուի եւ զիրենք կը
փրկէ։ Նաեւ կ'իմացնէ մեզ մարգարէն Քրիստոսի քա-
ջութիւնն եւ տանելիք յաղթութիւնն, որ իբրեւ Հայր,
իբրեւ Դատաւոր, իբրեւ Իշխան եւ իբրեւ Փրկիչ պի-
տի ազատէ մարդկային ազգն ի գերութենէ սատանայի։

Պօղոս առաքեալ առ Հռոմայեցիս գրած թղթովը
եղբայրսիրութիւն կը քարոզէ, եւ կը յիշեցնէ թէ Աստ-
ուած կը հրամայէ մարդուն որ իւր ընկերն սիրէ իւր
անձին պէս, եւ այս կանոնով մարդ ամեն բարոյական
առաքինութիւնները կը կատարէ եւ Աստուծոյ պատ-
ուիրանները կը պահէ։

Ճաշու Ս. Աւետարանը կը յիշեցնէ մեզ ի ձեռն
Մովսիսի աւանդած տասնաբանեայ պատուիրանքը, եւ
կը ծանուցանէ թէ Քրիստոս Տէրն մեր եկած է յաշ-
խարհ ոչ թէ արդէն աւանդուած Մովսիսական օրէնքը
կամ մարգարէական գրուածները ջնջելու, այլ հինն որ
թերի էր, լրացնելու։ Ուստի մարդոց առ ընկերս իւր
ունեցած պարտաւորութեանց վրայ խօսելով Քրիստոս

մեր Տէրն, ոչ թէ հին օրինաց մէջ արգիլուած բաները գործելէ զգուշանալու պատուէր կու տայ, այլեւ բացարձակապէս կարգելու այն ամեն գործ որ կը տանի դէպ յայն արգիլուած տեղերը, եւ կը հրաւիրէ զմեզ յառաջել այն ամեն առաքինութեանց մէջ, որով կարենանք. լինիլ կատարեալ, որպէս եւ երկնաւոր Հայրն մեր կատարեալ է։

## Գ. Կիւրակէ Բառասնորդական Պահոց՝ Անառակին։

Ճաշու գրքէն կը լսենք որ Աստուած Եսայի մարգարէի բերնով կը պատմէ Քրիստոսի եկեղեցւոյն մեծութիւնը, սրբութիւնը, փառաւորութիւնն ու պտղաբերութիւնը։ Յաւիտենական Բանն Որդին Աստուծոյ կատարելով երկնաւոր Հօր կամքը՝ հաստատեց Ս. եկեղեցին, որոյ զաւակաց կը մնայ դառնալ առ Տէր եւ գտնել ողորմութիւն, եւ Աստուած թողութիւն պիտի տայ այն ամեն անօրէնութեանց, որոց վրայ պիտի զղջան սրտովին։

Պօղոս առաքելոյն առ Կորնթացիս գրած երկրորդ թղթէն կը լսենք, թէ մեք հաւատացեալքս կենդանի Աստուծոյ տաճար եմք. Աստուած մեր մէջ պիտի բնակի, երբ անոր շնորհօքն ապրիմք։

Իսկ Ճաշու Աւետարանը կը պատմէ մեզ անառակ որդւոյն նկարագիրը եւ անոր հօր անսահման ներողամտութիւնն ու անյիշաչարութիւնը, եւ կ՚իմացնէ մեզ թէ՝ մեղաւոր մարդն որ Աստուծոյ շնորհքէն հեռացած է, երբ զղջայ ու ապաշխարէ, Աստուած իւր գթութեամբ, ողորմութեամբ եւ մարդասիրութեամբ կը նե-

րէ մեղաւորին, բաւական է որ մեղուցեալը հաստատապէս առաջադրէ եւ ուխտէ առաջի Աստուծոյ՝ այլեւս չմեղանչելու ընդդէմ աստուածային պատուիրանաց ։

## Գ. Կիւրակէ Քառասնորդական Պահոց, Տնտեսին.

Աստուած Եսայի մարգարէին բերնովը կ՚իմացնէ, թէ ի՛նչպէս յառաջագոյն սիրած էր զԻսրայէլացիս, որոց անունը «Ժողովուրդ Աստուծոյ» դրած էր, եւ երբ յարեցան Նոքա ի կռապաշտութիւն, երեսէ ձգեց զիրենք ։ Նոյնպէս երեսէ պիտի ձգէ զանոնք, որոնք չզգաստանան՝ չապաշխարեն եւ չդառնան առ Աստուած, եւ Իրեն շնորհքը պիտի տայ այնպիսի մարդոց, որ Իւր կամքը կատարեն եւ պատուիրանքները պահեն ։

Պօղոս առաքեալ առ Եբրայեցիս գրած թղթովը կը յիշեցնէ՝ թէ ամեն քրիստոնեայ մկրտուելով՝ Հոգւոյն Սրբոյ շնորհօքը կը լուսաւորուի եւ լուսոյ զաւակ կը լինի, եւ երբ կը տրտմեցնէ զՀոգին Սուրբ, սաստիկ կը մեղանչէ, եւ կրկին պատիժ կրելու կ՚արժանանայ ։

Ճաշու Աւետարանէն Մեծատան եւ Տնտեսին առակաւը կը սորվինք, թէ Աստուած տուած է մեր հոգւոյն զանազան շնորհքներ, որ անոնց տնտեսութիւնը ընենք, գիտնալով որ օր մի Աստուած մեր հոգեւոր տնտեսութեան հաշիւը պիտի ուզէ ։

Իսկ մեծատան եւ աղքատին պատմութեամբ՝ Քրիստոս կ՚իմացնէ թէ՝ աշխարհիս մէջ թէ՛ հեշտութիւնն եւ թէ՛ նեղութիւնն անցաւոր է. իսկ հանդերձեալ կենաց հանգիստն եւ տանջանքը յաւիտենական է միանգամ ընդ միշտ ։

## Ե. Կիւրակէ Բառասնորդական Պահոց, Դասաւորին.

Ճաշու գրքէն Եսայի մարգարէն Աստուծոյ կողմանէ կը պատմէ Իսրայէլի ժողովրդեան կրած պատիժը. վասըն զի, կ'ըսէ Աստուած, Ես զձեզ կոչեցի, եւ դուք ինծի չանսացիք, խօսեցայ ու խօսքս ոտքի տակ առիք, եւ չար գործքեր գործեցիք իմ առջեւ, եւ իմ չուզած բաներս ընտրեցիք ձեզի։

Պօղոս առաքեալ առ Փիլիպեցիս գրած թղթովը կը քարոզէ, թէ ինքն ուչն ու ուրուշը տուած է որ Աստուծոյ կոչման համաձայն երթայ ի Քրիստոս Յիսուս. եւ՞ կը խրատէ որ բարեբարոյ անձնաւորութեանց եւ ճշմարիտ առաքելական քարոզչաց օրինակին հետեւինք, եւ կը յաւելու ըսել, «Ի՛նչ որ սորվեցաք, ի՛նչ որ առիք, ի՛նչ որ լսեցիք եւ ի՛նչ որ տեսաք իմ վրաս, զանոնք միայն ըրէք։»

Այս աւուր Ճաշուի աւետարանական բանից մէջ երեք նիւթ կայ։

Առաջին՝ Մեսիայի թագաւորութեան երբ գալը, որոյ մասին հրեայք հարցուց ըրին Յիսուսի, որ անոնց պատասխանեց թէ իւր թագաւորութիւնն արդէն եկած է եւ այն միայն հոգեւոր։

Երկրորդ՝ պատուիրեց աղօթել առանց ձանձրանալոյ, եւ այրի կնոջ պատմութեամբ զգացուց որ բնաւ չձանձրանանք աղօթելէ։ Աստուած՝ որ երկար ժամանակ կ'ընէ երկայնմտութիւն, բայց հուսկ ապա վրէժխնդրութիւն ի գործ կը դնէ։

Երրորդ՝ Փարիսեցւոյն ու մաքսաւորին պատմութեամբը կ'ուսուցանէ, թէ մարդիկ հպարտութիւն եւ

*ինքնահաւանութիւն ընելով՝ իրենց ունեցած արդարութիւնն իսկ կը կորսնցնեն, իսկ անոնք որ խոնարհ խոստովանութեամբ իրենց մեղաւոր վիճակը կը ճանչնան, կ'արդարանան. զի մարդիկ հպարտանալով կը խոնարհին, եւ խոնարհելով կը բարձրանան ։*

## Տօն Ս. Գրիգոր Լուսաւորչին մերոյ մուտն ի վիրապն.

*Քառասնորդական պահոց վեցերորդ կիւրակէի նախընթաց օրը կը կատարէ մեր եկեղեցին Ս. Գրիգոր Լուսաւորչի ի վիրապն մտնելու յիշատակը, որով կը յիշենք թէ Ս. Գրիգոր կը հրաժարի հեթանոսական պաշտամունք կատարելէ, յայտնելով բացարձակապէս իւր քրիստոնեայ լինելը, որոյ համար կը մատնուի անտանելի չարչարանաց եւ կը ձգուի վերջապէս մահապարտներու վիրապը ։* (1)

## Զ. Կիւրակէ Քառասնորդական Պահոց, Գալստեան.

*Ճաշու գրքին մէջ Եսայի մարգարէն, կ'իմացնէ թէ Հրէից օրինակաւ մեղաւորաց ըրած բարեգործութիւնն անընդունելի է Աստուծոյ ։ Բարոյական գործքեր բարի նպատակաւ գործուած ըլլալու մասին երեք բան կը պահանջուի, բարի առարկայ, բարի պարագայ եւ բարի վախճան. առանց հակառակը գործող մարդիկ պատժելի կը լինին ։*

*Պօղոս առաքեալ առ Կողոսացիս գրած թղթովը նախ*

---

[1] Այս օրուան նախընթաց երեկոյին կը բացուի Ս. Պատարագի Սեղանոյն վարագոյրը, եւ զկնի Ս. Պատարագին կը ծածկուի Սեղանը։

կ՚ուսուցանէ, թէ Քրիստոս յաշխարհ գալով եւ հին օրէնքները կատարելով՝ չնորհաց վիճակը հաստատեց։

Երկրորդ՝ կը խրատէ զմեզ որ չխաբուինք նորահնար վարդապետութիւններէ, այլ հետեւինք միայն Քրիստոսի՝ որ իւր հաստատած եկեղեցւոյն գլուխն է, եւ քարոզած ճշմարիտ վարդապետութեանց ունկն դընեմք։

Երրորդ՝ կը յորդորէ զմեզ բարի գործերով եւ առաքինութիւններով զարդարուիլ, որոց ամենէն գլխաւորն է աստուածային սէրը, որ կատարելութեան կապն է, եւ ինչ որ խօսքով ու գործքով կ՚ընէք, Յիսուսի Տեառն անուամբ ըրէք։

Այս աւուր կարդացուած Ս. Աւետարանէն կը սովրինք, թէ Հրէից ժողովուրդը շատ սիրելի էր Աստուծոյ, որ այնքան բարերարութիւններ ըրած էր. բայց Հրեայք չճանչցան Աստուծոյ սէրը, եւ մերժեցին անոր ամեն բարերարութիւնները, եւ զՔրիստոս ի խաչ հանեցին։

Քրիստոս կ՚ուսուցանէ մեզ նաեւ, թէ մենք ունինք մի Հայր՝ որ յերկինս է եւ մի Վարդապետ միայն՝ որ է ինքն Յիսուս Քրիստոս, եւ թէ ամենքս եղբայր եմք եւ միոյ երկնաւոր Հօր որդիք, եւ թէ ճշմարիտ մեծութիւնը սիրոյ եւ խոնարհութեան մէջ է. սէր՝ որ աստուածային պատուիրանաց մեծն ու առաջինն է, խոնարհութիւն՝ որով միայն պիտի կարենանք բարձրանալ առաջի Աստուծոյ։

Յիսուս Քրիստոս վայեր կը կարդայ այն ամեն կեղծաւոր փարիսեցւոց եւ դպրաց նման սիրտ ունեցող անձանց, որոնք ամեն բան ի ցոյցս մարդկան կ՚ընեն,

*մինչդեռ յանուն Տեառն գործելու պարտաւորութիւնն ունիմք ։*

## Յիշատակ Յարութեան Ղազարու.

*Քառասնորդական պահոց վեցերորդ շաբթուն ուրբաթ օրը կը վերջանայ Մեծ Պահքը, որոյ հետեւեալ օրը կը տօնէ եկեղեցին Ղազարու յարութեան յիշատակը ։*

*Յիսուս Քրիստոս չորեքօրեայ մեռելոյն Ղազարու՝ զոր շատ կը սիրէր Քրիստոս, յարութիւն տալով յաւրոյց խօսքով. «Ղազարո՛ս, դուրս եկուր»։ Այս յայտնի եւ հիանալի հրաշքին վրայ շատ մարդիկ հաւատացին Յիսուսի. եւ ուստից մեզ Փրկիչը, որ թէեւ մեռնին իրենք եւ իրենց սիրելիք, կենդանի պիտի ըլլան նովաւ որ ըսաւ, «Ես եմ յարութիւն եւ կեանք». վասն զի ես կենդանի եմ, եւ դուք կենդանի պիտի լինիք» ։*

## Աւագ Շաբաթ.

Աւագ Երկուշաբթի (1). — *Աւագ շաբթուան օրհնութիւնք իրենց սարօքն Իսահակ Պարթեւ Ս. Հայրա-*

(1) *Աւագ Երկուշաբթի, Երեքշաբթի եւ Չորեքշաբթի օրերը խորանը բաց է. սակայն ըստ որում Աւագ Շաբաթը Զատկի տաղաւարի պահք է, ուստի չմատուցուիր Ս. Պատարագ. եւ այս երեք օրերը ուէրունական են՝ իբրեւ շարունակութիւն Ծաղկազարդի. բայց ոչ Արեւագալի ժամերգութիւն եւ ոչ Տէր ամենակալի աղօթք կայ. Առաւօտեան ժամերգութենէն յետոյ ճաշու երեք Ողորմեա կ՚ըսուի՝ առանց սակայն մեծ քարոզներն ու աղօթքներն ըսելու ։*

*պետին երկասիրութիւնք են, եւ այս շարականք կ'եր-գուին ա՛յնքան սրտաշարժ. որքան վսեմ իմաստներով յօրինուած են Երանաշնորհ Ս. Հայրապետին խանդա-վառ սրտէն բղխած ։*

*Այս առաւօտուն կարդացուած Ս. Աւետարանէն կ'ի-մանանք, թէ Յիսուս Բեթանիայէն կը դառնայ յԵրուսա-ղէմ, ուր կը տեսնէ մի թզենի, 'որ տերեւ միայն ունէր եւ ոչ պտուղ. Յիսուս «Յաւիտեան պտուղ չու-նենաս» կ'ըսէ թզենւոյն ։ Այդ թզենին կը նշանակէ այն քրիստոնեայն, որ ի հաւատս Քրիստոսի պտղաբե-րելու յոյս չտար ։*

*Յիսուս կ'ուսուցանէ, թէ այլեւս պիտի դադրի Իսրայէլեան եկեղեցին եւ անոր պիտի յաջորդէ Նոր-քրիստոնէական եկեղեցին, եւ կը յաւելու յայտնել, թէ երկնային արքայութեան համար բազումք են կոչեց-եալք, այլ սակաւք են ընտրեալք ։*

*Այս երեկոյին կը կարդացուի ի լուր ժողովրդոց Աստուածաշունչ Ս. Գրքի Ծննդոց մի քանի գլուխ-ներն՝ ի յիշատակ արարչագործութեան Աստուծոյ եւ անկման առաջին մարդոյն, եւ Ս. Աւետարանէն կը կարդացուի այն մասն, որ Քրիստոս կ'իմացնէր երկո-տասան առաքելոց իւր յԵրուսաղէմ երթալուն նպա-տակը, մատնուիլն եւ ի մահ դատապարտուիլը, եւ Զեբեթիայի որդւոց մօր խնդրանաց ի պատասխան կ'ըսէ, Արքայութիւն երկնից չարչարանք կրելով կ'ըս-տացուի ։ Ես եկայ յաշխարհ, կ'ըսէ Քրիստոս, ոչ թէ սպասաւորութիւն՝ այլ ծառայութիւն ընելու, եւ իմ կեանքս շատերու համար փրկանք տալու ։*

**Աւագ Երեքշաբթի**. — *Այս առաւօտեան կարդաց-*

ուած Ս. Աւետարանէն կը լսենք Քրիստոսի եղած հարցման պատասխանը «Թէ պա՞րտ է հարկս տալ Կայսեր, թէ ոչ»: Առ այս պատասխանած է Քրիստոս, թէ մեր սրտերը պարտիմք տալ մեր Աստուծոյ, եւ երկրաւոր թագաւորին վերաբերածները՝ տալ թագաւորին: Կը գովէ Յիսուս տաճարին մէջ դրուած գանձանակին երկու լումայ ձգող այրի կինն, որ իւր ապրուստի դրամէն տուաւ, մինչդեռ ուրիշներն իրենց աւելորդ դրամէն կուտային:

Երեկոյին կը կարդացուի Ս. Գրքէն Ջրհեղեղի պատմութեան մասը, եւ Ս. Աւետարանէն աշխարհի կատարածի նկարագրութիւնը, տասն կուսանաց առակն եւ տիրոջ մը իւր ծառայից քանքարներ տալու եւ հաշիւ ուզելու պատմութիւն ընող մասերը կը կարդացուին:

Աւագ Չորեքշաբթի. — *Այս աւուր առաւօտու Ս. Աւետարանէն կ'ուսանինք, թէ քահանայապետաց, ծերոց եւ դպրաց խումբը կը խորհի ձերբակալել զՅիսուս, Յուդա կը դաշնակցի անոնց հետ եւ մատնութեան համար կը սակարկէ: Կին մը թանկագին իւղով կ'օծէ Յիսուս: Յիսուս կը գովէ կնոջ հաւատքն եւ կ'ըսէ իւր աշակերտաց թէ՝ «Ուր քարոզեսցի Աւետարանս այս ընդ ամենայն աշխարհ՝ խօսեսցի եւ զոր արար դա՝ ի յիշատակ դորա.»*

Երեկոյին կը կարդացուի Սոդոմ եւ Գոմոր քաղաքաց կործանման պատմութիւնը՝ հակառակ Աբրահամու ըրած բարեխօսութեան. եւ Ս. Աւետարանէն՝ Յուդայի ընելիք վատ մատնութեան վերաբերած մասը, ա՛յն ջնջին գումարին համար, որով խոստացաւ Հրէից ժողովոյն ցոյց տալ այն տեղն, որ կարելի էր բռնել զՅիսուս գիշերային առանց որ եւ է խռովութեան: Յուդայի

*գործած նոյն չարաչահութիւնը կոչուեցաւ արծաթսիրութիւն, որ մայր է ամենայն չարեաց։*

**Աւագ Հինգշաբթի։** — *Այս աւուր առաւօտուն կարդացուած Ս. Աւետարանէն կը հասկնանք, թէ Յիսուս տրտում է յերեսաց թերահաւատութեան հրէից, սակայն եւ այնպէս յորդոր կը կարդայ ժողովրդեան ըսելով «Հաւատացէք ի լոյսն»։*

*Այսօր յետ առաւօտեան ժամերգութեան կը կատարէ եկեղեցին ապաշխարութեան կարգը, որպէս զի առաքելական կանոնաց համաձայն հաւատացեալք յետ ապաշխարութեան՝ զոր կրեցին Քառասնորդական պահոց օրերը, յետ արձակման աղօթից՝ հաղորդուին մեղաքաւիչ մարմնոյ եւ արեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։*

*Ապաշխարութեան կարգի կատարման սկսման պահուն Սեղանը կը ծածկուի վարագուրաւ* (1)*, յորում կը կարդացուին ապաշխարութեան սաղմոսք, շարականք եւ Մանասէի «Տէր ամենակալ» աղօթքը եւ Հին ու Նոր Կտակարանի ընթերցումներէ յետոյ կը կարդացուի Ս. Բարսեղ Հայրապետի յօրինած աղօթքը, յորում կը բացատրուի Ադամայ անկման վիճակը եւ Աստուծոյ այն ողորմութիւնը, որով խոստացաւ Փրկչին առաքումը, եւ կը տեսնուի Հօր Աստուծոյ առ մարդկային ազգն ունեցած գթութիւնը։*

(1) Քրիստոնէութեան նախնի դարուց մէջ ապաշխարութեան այս կարգը կը կատարուէր եկեղեցւոյ գաւթին մէջ՝ փակելով տաճարին դուռը, իսկ այժմ ծնւակերպութիւնը միայն կատարուելով՝ Սեղանը կը ծածկուի վարագուրաւ, եւ «Զողորմութեան քո զդուռն բաց մեզ» շարականի երգով կը բացուի խորանը։

Յաւարտ այս աղօթքին կը բացուի վարագոյրն, եւ եպիսկոպոսն կամ երիցագոյն քահանայն բեմէն կ'ընթեռնու օրհնութեան աղօթքը Յովհան Ոսկեբերանի՝ բոլոր ապաշխարողաց վրայ ։

Ցերեկուան Ճաշուի ժամանակ ծածկուած է սեղանը, եւ կ'ըսուի Ճաշուի երեք Ողորմեան, յետ որոյ կը կատարուի երեկոյեան ժամերգութիւնը, յորում Ս. Գրքէն կը կարդացուի Աստուծոյ, Աբրահամէն զԻսահակ զոհ ուզելու մասը ։ Զկնի «Հայր գթած» աղօթքին՝ Պօղոսի առաքելոյ առ Կորնթացիս գրած առաջին թղթէն կը կարդացուի «Զի ես ընկալայ ի Տեառնէ», որով Հաղորդութեան Ս. Խորհրդոյ վրայ կը խօսի եւ կը պատուիրէ թէ՝ քանի՛ անգամ որ ուտէք այս հացն եւ ըմպէք այս բաժակը՝ զմահ Տեառն պատմեցէք, որ մեզ ողորմութեան միջնորդ եղաւ եւ զմարդիկ հաշտեցուց Հօր Աստուծոյ հետ, եւ կը յաւելու, թէ մարդ պէտք է նախապէս քննել իւր խղճին վիճակը եւ այնպէս մերձենալ սրբութեան Սեղանին, եւ թէ՝ ո՛վ որ անարժանութեամբ կը հաղորդուի, պարտական պիտի լինի Ս. Մարմնոյ եւ Արեան Տեառն ։

Յաւարտ առաքելական թղթոյն՝ բեմէն կը կարդացուի Ընթրեաց Ս. Աւետարանը, յորմէ կ'ուսանինք թէ մեր Փրկիչը՝ Հրէից բաղարջակերաց տօնի առաջին օրը վերջին ընթրիքն ըրաւ, սահմանելով Հաղորդութեան Ս. խորհուրդն ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց, եւ պատուիրեց այս փրկարար խորհուրդը կատարել ի յիշատակ իւր յաւիտենական Պատարագին ։

Ս. Պատարագի «Հայր մեր» երգէն առաջ՝ եպիսկոպոսը կամ երիցագոյն քահանայն կ'ընթեռնու բեմէն Ս. Բարսղի՝ Հաղորդութեան մեղսաքաւ-Խորհրդոյն

*վեհութիւնը բացատրող եւ հաւատացելոց յորդորական խրատ տալու իմաստն ունեցող յօրինած աղօթքը ։*

*Իսկ երեկոյին՝ յորում Ոտնալուայի սրբազան արարողութիւնը կը կատարուի, նախ կ՚ըսուի Տէրունական աղօթքն «Ողորմեա՛ ինձ Աստուած» սաղմոսն ի ձայն եղանակաւոր, վերջը շարական «Այսօր կանգնեցաւ աւազան մկրտութեան», եւ այս պահուն բեմին վրայ խնկարկութիւն (1) կը լինի, յետ որոյ կը կարդացուին աղօթք, որոց մէջ ամենէն խրատալիցն է «Աստուած Սէր է»։*

*Աղօթից վերջը քարոզ եւ սրտաշարժ տաղեր կ՚երգուին, Հաղորդութեան Ս. խորհրդոյն եւ Ոտնալուայի վրայ յօրինուած, որոցմէ յետոյ ջուրն եւ իւղն կ՚օրհնուին եւ կը սկսուի ոտից լուացման արարողութիւնը ։*

Աւագ Ուրբաթ. — *Աւագ ուրբաթու օրը կը զարթուցանէ մեր մտաց մէջ, մեր Փրկչին Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի չարչարանաց եւ խաչելութեան յիշատակը, որոյ չարչարանաց եւ խաչի մահուան արդեամբ փրկուեցաւ մարդկային ազգն եւ անոր Ս. եկեղեցւոյն որդիքն եղաւ,*

*Աւագ ուրբաթու գիշերապաշտօնը կը սկսի Տէրունական աղօթքով եւ կը շարունակուի մինչ ցկանոնագլուխ։ Խաչելութեան պատկերին՝ որ բեմին վրայ դըրուած է ի տես հաւատացելոց, առջեւը շարուած է եր-*

[1] *Ինչպէս առանց Տէրունական աղօթքի եւ սաղմոսի ոչ ժամերգութիւն, ոչ Ս. խորհրդոց մատակարարութիւն եւ ոչ եկեղեցական արարողութիւն կը կատարուի, նոյնպէս եւ առանց խնկարկութեան, որպէս եւ ի հնումն քահանայք առաւօտ եւ երեկոյ խունկ կը ծխէին տաճարին մէջ անխափան։*

կոտասան մոմ ըստ Թուոյ առաքելոց եւ մի մեծ մոմ ի նշանակ Քրիստոսի ։

Այսօր անճառ երգին զոր երկասիրած է Ս. Ներսէս Շնորհալին, ամէն վեց տունի վերջը կը կարդացուին Աւետարանչաց գրած չորս Աւետարաններէն այն մասերը, որոնք կը յիշեցնեն մեզ մեր Փրկչին Գեթսեմանի պարտիզին մէջ երեք անգամ աղօթքի կենալը, Յուդայի մատնութիւնը, Աննա եւ Կայիափայ քահանայապետաց ապարանքին մէջ ծեծուիլը, Պետրոսին երից ուրացութիւնը ։ Կարդացուած Աւետարաններէն առաջինը Յովհաննու է, որ կ'ըսուի «Քրիստոսի կտակ»ը, որով մեր Տէրը կտակեց մարդոց սէր եւ միաբանութիւն, և պատուիրեց ըսելով «Սիրեցէք զմիմեանս» ։

Իւրաքանչիւր Աւետարանի ընթերցմանէ վերջը՝ խաչելութեան պատկերին առջեւ դրուած վառ մոմերէն երկու երկու (1) կը վերցուի եւ ապա մեծ մոմը, եւ եկեղեցին կը պատի խաւարաւ, որ արեգակին արտաքոյ բնութեան օրինաց խաւարումը կը յիշեցնէ մեզ ։

Ուրբաթ ցորեկին Ճաշուի կանոնական ժամերգութենէ (2) յետոյ կարդացուած մարգարէական գրքերէն, առաքելական թղթերէն եւ չորս Աւետարաններէն կը յիշենք Քրիստոսի Տեառն մերոյ խաչելութեան

---

(1) Ըստ ոմանց կը մեկնուի վառ մոմերէն երկու երկու վերցուիլը՝ աշակերտաց իրենց Տէրը Թողլով փախչիլը, եւ մէկ մոմին վերցուիլը՝ Քրիստոսի Հրեայներէն բռնուիլը եւ առ Կայիափա տարուիլը կը նշանակէ ։

[2] Ուրբաթու ցորեկէն մինչ ցերեկոյ ծնրադրութիւն ընելու հրաման չտար եկեղեցին անոր համար՝ որ նոյն պահուն խաչահանք հանդէպ Խաչին ծունր դրած կը ծաղրէին զխաչեալն Յիսուս ։

ժամանակ տեղի ունեցած նշանաւոր դէպքերը, եւ թէ՝ իւր արեան հեղմամբ քաւեց մարդոց մեղքն եւ յաղթեց մահուան։

Աւագ ուրբաթ օր չմատուցուիր Ս. Պատարագ անոր համար՝ որ յաւիտենական քահանայապետն Յիսուս Քրիստոս նոյն օրը պատարագեցաւ ի սեղան Խաչին։

Երեկոյին՝ եկեղեցին յետ կանոնական ժամերգութեան կը կատարէ Թաղման կարգը, կարդալով այն մարգարէական գրքերը, առաքելական թղթերն եւ Աւետարանները, որոնք մեր Փրկչին մահուան ու թաղման նկարագիրն ունին։ Ժամերգութեան ժամանակ առաջին Երեքսրբեան երգն, զոր եկեղեցական հարք ի գունս անկեալ կ'երգեն առաջի Աստուածընկալ Ս. Խաչին, կը յիշեցնէ զՍ. Յովսէփ Արեմաթացի հաւատացեալը, որ գնաց առ Պիղատոս, եւ խնդրեց Յիսուսի մարմինը, զոր առնլու հրամանը ստանալէ յետոյ՝ մօտեցաւ խաչելոյն Յիսուսի եւ ծնրադրեալ երգեց առաջին անգամ. «Սուրբ Աստուած, Սուրբ եւ հզօր, Սուրբ եւ անմահ, որ խաչեցար վասն մեր, ողորմեա մեզ»։

Իսկ Համբարձի շարականէն յետոյ երգուած Երեքսրբեանն՝ որ կ'ըսուի «Թաղեցար վասն մեր», «Փառաւորեալ եւ օրհնեալ» կցորդովը կ'երգուի։

Եկեղեցին Քրիստոսի Տեառն մերոյ անապական թաղման յիշատակը կը կատարէ նախատօնակաւ, յորում հոգեւոր պաշտօնէից դասն եկեղեցական մեծավայելուչ հանդիսիւ կ'ելնէ ի թափոր, զի թաղում Տեառն Աստուծոյ Յիսուսի Քրիստոսի է։

Ծրագալոյց. — Զատկի նախընթաց օրը Ծրագալոյց է, եւ եկեղեցին առաւօտուն կը շարունակէ Քրիստոսի

թաղման կարգի շարունակութիւնը, եւ յաւարտ ժամերգութեան կը կարդացուի գերեզմանի կնքման մասը Ս. Աւետարանէն։

Իսկ երեկոյին կը կարդացուին Ս. Գրքէն Ծննդոց Ա. մի քանի գլուխներն, ապա Քրիստոսի մահն ու թաղումը նախագուշակող մարգարէից գրուածքն. հուսկ ուրեմն Դանիէլ մարգարէին եւ անոր երեք ընկերաց պատմութեան գիրքը, յորոց աւարտ կը մատուցուի Ս. Պատարագը եւ կը կատարուի Նախատօնակ։ Երեկոյին Նաւակատիք է։

**Ս. Զատկի առաւօտ.** — Այս աւուր արշալոյսին շատեր կը սպասէին անհամբեր, որ երթան ի գերեզման իրենց վարդապետին, որ մեռած էր, կատարելու համար իրենց յարգանաց վերջին պարտքը, անոնք՝ որք Յիսուսի թաղման պահուն միայն յուղարկաւոր եղած էին։ Իւղաբեր կանայք՝ խնկով, մոմով եւ իւղով կը յառաջանային ի գերեզման, որոյ վէմն ի բաց ձգուած կը տեսնեն զարմանօք, եւ մարդկային ազգի վերակենդանութեան ցնծառիթ աւետիսը կը լսեն, «Զի՞ խնդրէք զկենդանին ընդ մեռեալս, յարեա՛ւ, չէ աստ»։ Ուստի առաւօտեան ժամերգութեան «Փա՛ռք ի բարձունս» երգէն առաջ եպիսկոպոսը կամ երիցագոյն քահանայն իբրեւ աւետաւոր հրեշտակ՝ կ'աւետէ Քրիստոսի Տեառն մերոյ կենսաբեր Յարութիւնը համօրէն հաւատացելոց ըսելով, «Քրիստոս յարեա՛ւ ի մեռելոց»։ Եկեղեցին կ'երգէ այսօր Ներսիսի Լամբրոնացւոյ երկասիրած «Այսօր յարեաւ ի մեռելոց» գեղեցկահիւս շարականը։



# ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆՔ

## Կիւրակէից եւ շաբաթամէջ գլխաւոր Տօնից Սկսեալ ի Զատկէ մինչ ցՎարդավառ։

Յինանց կ'ըսուին Զատկի առաջին օրէն մինչ ցՀոգեգալուստ, որ կը նշանակէ յիսուն։

Ինչպէս Զատկի առաջին, նոյնպէս երկրորդ եւ երրորդ օրերը պարտիմք դադրիլ մեր ամեն մարմնաւոր գործերէ։

Յինանց մէջ սրբոց տօն չկատարուիր, միայն առաջին եօթնեկին չաբաթ օրը Յովհաննու Մկրտչի գլխատման յիշատակը կը կատարէ եկեղեցին։

Յովհաննէս Մկրտիչ գլխատուելով բանտին մէջ՝ նը կրցաւ մարմնաւոր աչօք տեսնել այն երկնային արքայութիւնը, որ հաստատուեցաւ մահուամբ եւ յարութեամբ Յիսուսի Քրիստոսի։

Նոր Կիւրակէ կամ Կրկնազատիկ. — Զատկի ութերորդ օրը կ'ըսուի Նոր Կիւրակէ կամ Կրկնազատիկ, յորում մեր Փրկիչը յետ իւր յարութեան երեւցաւ առաքելոց եւ այլոց բազմաց, եւ հաստատեց իւր յարութեան ճշմարտութիւնը, ցոյց տալով Թովմայի իւր մարմնոյն վէրքերը, եւ երանի՛ կարդալով զինքն անձամբ չտեսած հաւատացողներուն։

Նոր Կիւրակէ կ'ըսուի յետ յարութեան եկած առաջին միաշաբաթին, երբ առաքեալք վճռեցին, թէ արարչագործութեան ժամանակ Աստուծմէ սահմանուած եւ Մովսիսական օրինաց տուուչութեան առթիւ՝ դար-

ձեալ Աստուծմէ պատուիրուած շաբաթ օրը սուրբ պահելը՝ Քրիստոսի յարութիւն առած օրը պէտք է տալ Աստուծոյ այս պաշտօնը, զոր իբրեւ քրիստոնեայ պարտիմք մատուցանել։ Ուստի այն օրն յարեաւ Քրիստոս եւ այն օրն՝ յորում Հոգին Սուրբ իջաւ ի վերնատունն ժողովեալ հաւատացելոց վրայ, եկեղեցին կը տօնէ յարութեան յիշատակը, հետեւաբար Նոր-Կիւրակէն է Նոր-Ուխտի Սուրբ Շաբաթը-հանգիստը։ Եկեղեցին կ՚երգէ այսօր Ներսէս Լամբրոնացւոյ հեղինակած «Նորոգեալ կուսիք» շարականը։

**Աշխարհամատրան Կիւրակէ.** — Առաքեալք այսօր հիմնեցին առաջին եկեղեցին յԵրուսաղէմ ի Սիոն, ուստի ի յիշատակ հաստատութեան քրիստոնէական առաջին եկեղեցւոյն՝ այս Կիւրակէն կոչուեցաւ «Աշխարհամատրան», այն է՝ աշխարհի վրայ հաստատուած առաջին մատրան օրը, որ է տեղի հաւատացելոց աղօթից աստուածպաշտութեան.

Այս Կիւրակէն «Կանանչ» եւ յաջորդ Կիւրակէն «Կարմիր» կը կոչուի։ Այս կանաչ եւ կարմիր բառերուն սա բացատրութիւնը տրուած կը տեսնուի, թէ եկեղեցին իւր հաստատութեամբ սկսաւ ուռճանալ, եւ կանանչագոյն գեղազարդիլ, եւ կարմրանալ արեամբ մարտիրոսաց։

Կայ սոր նման ուրիշ բացատրութիւն մ՚ալ, որպէս թէ մարդն իբրեւ տունկ բանական թառամած էր մեղաց խորշակէն։ Նոյն բանական տունկն արեամբ Յաչին Քրիստոսի ոռոգուելով, եւ յարութեան լոյսէն նոր կեանք առնելով, անոր պտուղն նախ կանանչցաւ եւ ապա կարմրացաւ։

**Երկրորդ Ծաղկազարդ.** — *Քրիստոսի Տեառն մերոյ Համբարձման չորրորդ օրը կ'ըսուի «Երկրորդ Ծաղկազարդ»: Ինչպէս առաջին Ծաղկազարդին մեր եկեղեցին կը տօնէ Աստուածորդւոյն յաղթական փառօք յԵրուսաղէմ մտնելը, նոյնպէս երկրորդ Ծաղկազարդին՝ յաբուցելոյն ի մեռելոց Քրիստոսի փառաւոր մուտքն ի վերինն Երուսաղէմ, ուր դասք հրեշտակաց ցնծալից երգովք կը դիմաւորեն մեր Տէրը աղաղակելով, «Ո՛վ է սա Թագաւոր փառաց՝ Տէր զօրութեանց, Սա Ինքն է Թագաւոր փառաց:»*

*Աւանդութիւն կայ ազգիս մէջ, թէ մի հրեշտակ Գրիգոր Լուսաւորչի կը սպասաւորէր վիրապին մէջ. այս հրեշտակն Համբարձման չորրորդ օրը-չերեւիր. յաջորդ օրը կը տեղեկանայ Ս. Գրիգոր, թէ նոյն օրը Յիսուսի հրեշտակաց չորրորդ դասակարգը մտնելուն համար, նոյն դասակարգն ի յիշատակ ամեն տարի նոյն օրը կը տօնէ: Գրիգոր վկայասէր անշուշտ Հայոց այս աւանդութեան վրայ հիմնելով յօրինած է այս աւուր երգուած օրհնութեան շարականը, «Մեծահրաշ այս խորհուրդ աւանդութեան առ մեզ հասեալ, զոր հոգւոց լուսատուն ի պաշտպանէ իւրմէ լուեալ, եթէ տօն մեծ է այսօր իմոյ դասուն որ ի յերկինս»:*

*Այս տօնը Հայաստանեայցս եկեղեցւոյ միայն յատուկ է:*

**Առաջին Կիւրակէ Ցարութեան եւ Ցիշատակ Եղիա Մարգարէի.** — *Զկնի Հոգեգալստեան եկած Կիւրակէն կ'ըսուի Ցարութեան առաջին Կիւրակէ, յորում ժամերգութիւնն ըստ կարգի Ցարութեան կատարուելով հանդերձ, Ս. Պատարագի Ճաշուի գրքին եւ Ս. Աւե-*

տարանին մէջ կը յիշատակուի՝ Եղիա մարգարէի յերկինս վերանալուն պատմութիւնը ։

Առաջիկայ եօթնեկին երկուշաբթի եւ երեքշաբթի՝ Հռիփսիմեանց եւ Գայիանեանց կուսանաց յիշատակները կը կատարուին, Կոմիտաս Կաթողիկոսի յօրինած «Անձինք նուիրեալք» շարականի երգով։

Հինգշաբթի՝ Սրբոյն Յովհաննու Կարապետին եւ Աթանագինէ Եպիսկոպոսին, որոց նշխարքն ի ձեռն Ս. Գրիգոր Լուսաւորչի ի Մուշ փոխադրուելու յիշատակի օրն է, եւ ուր հիմնուեցաւ վանք մը յանուն Ս. Կարապետի, որ ուխտատեղի է Հայ քրիստոնէից ։

Շաբաթ՝ Ս. Գրիգոր Լուսաւորիչ վիրապէն ելնելու յիշատակն է, որ երբ արձակուեցաւ վիրապէն եւ կամօքն Աստուծոյ բազմեցաւ յաթոռ հայրապետութեան, շատ մը եկեղեցական կարգեր ու կանոններ սահմանելէ զատ՝ պատուիրեց նաեւ որ Յովհաննու Մկրտչի եւ Աթանագինէ նահատակ եպիսկոպոսին տօնը կատարուի ամ ըստ ամէ ։

**Տօն Կաթողիկէ Սրբոյ Էջմիածնի**. — Երբ աւարտեցաւ Ս. Էջմիածնի Մայր Աթոռոյ տաճարին շինութիւնը, որ կառուցաւ ճիշդ այն տեղն, ուր Որդին Միածին յերկնից իջնելով՝ ի ձեռին ունեցած ոսկի ուրամբն նշանակեց ։ Ս. Գրիգոր Լուսաւորիչ օրհնեց եւ նուիրագործեց նոյն նորաշէն տաճարն եւ սահմանեց կատարել յամենայն եկեղեցիս Ս. Էջմիածնի Կաթողիկէ եկեղեցւոյ տօնը ։

Այս տօնի կատարման հետեւանօք սահմանուեցաւ տաճարական տօնի եկեղեցական հանդէսներ, որոնք կը կատարուին այն տէրունական տօնին փառաւորու-

թեան եւ կամ այն Սրբոյն յիշատակին համար, որոյ անուամբ կառուցուած, օրհնուած եւ նուիրագործուած են այս տաճարները։

**Ս. Մեծն Ներսէս Հայրապետ եւ Խադ Եպիսկոպոս.** — Մեծն Ներսէս Հայաստանեայց Ս. եկեղեցւոյ նշանաւորագոյն հայրապետներէն մին է, որ շինեց վանքեր, հաստատեց դպրեվանքեր, սահմանեց աղքատանոցներ, ուրկանոցներ եւ հիւանդանոցներ, դրաւ եկեղեցական կարգեր եւ կանոններ, որովք եկեղեցւոյ եւ Հայոց բարերար հանդիսացաւ եւ իրաւամբ վայելեց «Մեծն» տիտղոսը։ Եւ աւելի մեծ բարիք մ'ըրաւ, այն է՝ տըուաւ ազգին մի զաւակ, որ է Սահակ Պարթեւ Հայրապետը։ Իսկ Խադ՝ որ Սարկաւագ էր, Վարդապետ եւ ապա Եպիսկոպոս ձեռնադրուեցաւ, անոր յանձնուեցաւ վանօրէից եւ այլ ազգային բարեպաշտական հաստատութեանց տեսչութիւնը։

**Գիւտ Նշխարաց Սրբոյն Գրիգորի Լուսաւորչի.** — Ս. Գրիգոր Լուսաւորիչ իւր երկրաւոր կենաց վերջին տարիները կ'անցնէր իւր առանձնարանի մէջ, ուր կը փառաւորէր զԱստուած, եւ անդ կնքեց իւր արդիւնաւոր կեանքը։ Հովիւք գտան անոր մարմինը, եւ առանց զայն ճանչնալու ամփոփեցին Մանիայ այրին մէջ, որ Սրբոյն ճգնարանն էր։

Յետ ժամանակի տեսիլքով յայտնուեցաւ Գառնիկ անուն ճգնաւորին, որ Ս. Գրիգորի մարմինն առնլով ամփոփեց Թորդան աւանի եկեղեցւոյն մէջ։ Ի վերջոյ Ներսէս Գ. Շինող մականուանեալ Կաթողիկոսը փոխադրեց մեր Նախահայրապետին նշխարքն ա'յն տեղ, ուր առաջին անգամ Ս. Լուսաւորչին հանդիպեցաւ Տրդատ եւ գտաւ իւր բժշկութիւնը։

**Ս. Թարգմանիչք Սահակ եւ Մեսրոպ.** — *Մեծն Ներսէսի որդին Ս. Սահակ բարձրանալով հայրապետական աթոռը՝ պայծառացուց եկեղեցիները, շինել տուաւ բարեգործական եւ կրթական հաստատութիւններ եւ սահմանեց եկեղեցական կարգեր ու կանոններ։ Ս. Մեսրոպ Տարօնեցին յայտնեց Ս. Հայրապետին՝ Հայկական նշանագրերը գտնելու ունեցած փափաքը։ Յաջողութեամբ Տեառն եւ գործակցութեամբ Ս. Հայրապետին հասաւ իւր գովելի նպատակին։*

*Ս. Սահակ եւ Ս. Մեսրոպ թարգմանութեամբ Աստուածաշունչ Ս. Գրոց, յօրինմամբ եկեղեցական ձայնից եւ երգոց եւ այլ ինքնագիր մատենագրութեամբք՝ Հայաստանեայց Ս. եկեղեցւոյ պայծառութեան պատճառ եղան. ուստի պարտաւոր եմք երախտագիտական սըրտիւ օրհնել անոնց յիշատակը։*

*Թէեւ Ս. եկեղեցին ամեն տարի մեր երանաշնորհ Վարդապետաց եւ Թարգմանչաց Ս. Սահակայ եւ Մեսրոպայ տօնը կը կատարէ, սակայն հարկ է որ Հայոց բովանդակ լրութիւնն ի պատիւ եւ ի յարգանս նոցա դադրի Ս. Թարգմանչաց տօնի օրն ամեն աշխարհային գործերէ։* (1)

**Ս. Տրդատ.** — *Տրդատ կռապաշտ էր, սակայն աւե-*

---

[1] Հայ քրիստոնեայ ժողովուրդը պարտաւոր է նոյնպէս դադրիլ աշխարհային գործերէ՝ Հայաստանեայց Ս. եկեղեցւոյ առաջին Հիմնադրաց Թադէոս եւ Բարթուղիմէոս Սրբազան Առաքելոց, Ս. Գրիգոր Լուսաւորչի երեք տօներուն, Վարդանանց եւ այն ամեն Սրբոց՝ որ Հայոց Լուսաւորութեան պատճառ եղած են, որոց տօնը կատարել եւ զանոնք ի մասնաւորի պատուելու հրահանգը տրուած է, որ կը տեսնուի Տօնացուցին մէջ։

տարանական լուսով լուսաւորուած՝ ի ձեռն Սրբոյն Գը-
րիգորի հաւատաց ի Քրիստոս Յիսուս Տէրն մեր, եւ
քրիստոնէութեան արագ տարածման ջանադիր եղաւ,
ճանչցաւ աշխարհային փառաց եւ մեծութեան ունայ-
նութիւնը, եւ համոզուեցաւ թէ՝ պէտք է աւելի ուշա-
դիր լինել անանց փառաց եւ յաւիտենական երջանկու-
թեան։

Տրդատայ քրիստոնէական կեանքն օրինակ է մեզ՝
թէ ժողովրդային ինչ դասակարգի մէջ որ գտնուինք,
հետեւինք անոր բարեպաշտական ընթացից, եւ նիւ-
թական ձեռնտուութեամբ աջակից լինիմք Հայոց բա-
րենպատակ հաստատութեանց կառուցման եւ անոնց
բարոյական բարգաւաճման։

Գիւտ Տփոյ Ս. Աստուածածնի. — Ըստ եկեղեցական
աւանդութեան կը պատմուի, որ Ս. Աստուածածնի գըլ-
խադիրը (լաչակ) գտնուած է յԵրուսաղէմ, տփի մը մէջ
ամփոփուած, եւ անտի ի Կոստանդնուպոլիս բերուած։
Այս տօնն ալ ամեն տարի Վարդավառէն տասնեւհինգ
օր յառաջ եղած Կիւրակէին կը կատարուի ըստ տօնա-
ցուցի։

Տօն Սրբոց Երկոտասան Առաքելոց Քրիստոսի եւ Պօ-
ղոսի Երեքտասաներորդ Առաքելոյն. — Հայաստանեայց
Ս. եկեղեցին կը տօնէ Քրիստոսի ընտրած պարզամիտ
եւ անուս մարդիկը, որք կոչուեցան «Առաքեալ», ըստ
թուոյ երկոտասան ցեղից Իսրայէլի։ Քրիստոս լեցուց
զանոնք իւր Հոգւով եւ կրթեց իւր վարդապետու-
թեանց մէջ, եւ ընտրեց զանոնք լինել իւր եկեղեցւոյն
հիմնադիրները։ Իսկ Պօղոս՝ որ Եբրայեցերէն կոչուած է
Սօղոս, յետ յարութեան Քրիստոսի՝ աստուածային

*յայտնութեամբ հաւատաց յՈրդին Միածին Յիսուս եւ կոչուեցաւ «առաքեալ հեթանոսաց»։*

*Այս ամէն Առաքեալք հիմնեցին քրիստոնէական եկեղեցին, քարոզելով զՏէր մեր Յիսուս Քրիստոս, Աստուած եւ Փրկիչ աշխարհի։*

*Անոնք Աւետարանական լուսով լուսաւորեցին զաշխարհ ըստ պատգամին Յիսուսի, «Դուք էք լոյս աշխարհի», եւ համայն մարդկութեան ճշմարիտ բարերարներ լինելու փառաց արժանի եղան։*

Յիշատակ Տապանակին Հնոյ եւ Տօն Նորոյս Ս. Եկեղեցւոյ. — *Տապանակն նուիրական արկղ մ՚էր, յորում դրուեցան Օրինաց Աստուածագիր կրկին տախտակներն, ի վկայութիւն Ուխտին Աստուծոյ իւր ժողովրդեան հետ։ Նոյն Ուխտի տախտակներէն զատ Մովսէս Աստուծոյ հրամանաւ դրաւ տապանակին մէջ, նաեւ Ահարոնի գաւազանն որ ծաղկեցաւ, եւ ոսկեղէն սափորով անապատին մէջ տեղացող մանանայէն մաս մը, որ նշանակ էր ճշմարիտ հացին կենաց, զոր Քրիստոս պիտի շնորհէր իւր Ս. եկեղեցւոյն։ Անոնց հետ դրուեցաւ նաեւ ոսկի բուրվառը։*

*Մեր եկեղեցին ամէն տարի Վարդավառի տօնի նաւակատեաց օրը կը յիշատակէ Տապանակն եւ անոր՝ հետ Նոր-Ուխտի Եկեղեցին, որոյ նախանկար օրինակն էր Տապանակը։*



## ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆՔ

### Կիւրակէից եւ շաբաթամէջ գլխաւոր տօնից Սկսեալ ի Վարդավառէ մինչ ցՎերափոխումն Ս. Աստուածածնի.

**Թադէոս Առաքեալ եւ Սանդուխտ Կոյս.** — *Քարոզութեամբ Թադէոս Առաքելոյն հաւատաց ի Քրիստոս Սանատրուկ եւ անոր դուստրն Սանդուխտ։ Սանատրուկ յարելով վերստին ի կռապաշտութիւն՝ հալածանք հանեց ընդդէմ քրիստոնէութեան, եւ նահատակեց զԹադէոս եւ ընդ նմին իւր աղջիկը Սանդուխտ, որոց նահատակութեան տօնը կը կատարէ եկեղեցին պատշաճաւոր հանդիսիւ։*

**Տիեզերական Ժողով Եփեսոսի.** — *Եփեսոսի Տիեզերական Ժողովն՝ որ գումարեցաւ 431 թուականին, կը յիշեցնէ մեզ հերետիկոս Նեստորն եւ անոր հնարած մոլորութիւններն, որովք կը յայտարարէր նա, թէ Քրիստոս ունի երկու անձն, և զՍուրբ Կոյսն Մարիամ կ՚անուանէր Քրիստոսածին։*

*Այս Տիեզերական Ժողովը միաձայնութեամբ երկու հարիւր Հայրապետաց հաստատեց՝ մեր առաքելական ուղղափառ Ս. եկեղեցւոյ նախնի ճշմարիտ վարդապետութիւնը, թէ «Ի մի անձին Քրիստոսի կայ Աստուածային եւ մարդկային բնութիւն անճառ միութեամբ, եւ թէ՝ եկեղեցին զՍուրբ Կոյսն Մարիամ կը խոստովանի Աստուածածին։*

*Եկեղեցին կը տօնէ այս Տիեզերական Ժողովն ամեն տարի Ս. Աստուածածնի Վերափոխման Բարեկենդանի նախընթաց օրը։*

**Տօն Տողակաթի Ս. Էջմիածնի.** — *Տողակաթ անունն առնուած է Ս. Գրիգոր Լուսաւորչի եղած Աստուածային յայտնութենէն. զի՝ ինչպէս իջմամբ Որդւոյն Միածնի կոչուած է Էջմիածին, նոյնպէս երկնքէ ծագած լուսոյ շողակաթիլէն առնուած է Տողակաթ անունը։ Նոյն Աստուածային յայտնութեան ժամանակ տեսաւ Ս. Գրիգոր լուսեղէն տաճարի մը ձեւը՝ սիւներով եւ գմբէթներով հիմնուած՝ իբրեւ օրինակ եկեղեցւոյն Քրիստոսի, որոյ տեղն արդէն նշանակուած էր եւ որմով պատած։*



## ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆՔ

*Կիւրակէից եւ շաբաթամէջ գլխաւոր տօնից*

*Սկսեալ ի տօնէ Վերափոխման Ս. Աստուածածնի*

*Մինչ ցԽաչվերաց.*

**Դիւտ Գօտւոյ Ս. Աստուածածնի.** — *Ըստ եկեղեցական աւանդութեան կը պատմուի, թէ Ս. Կոյս Մարիամու Գօտին, զոր այն ժամանակի կանայք գործածելու սովորութիւն ունէին, Երուսաղէմի մէջ ձեռք անցուած է, եւ այն ժամանակէն սահմանուած է կատարել Գիւտ Գօտւոյ Ս. Աստուածածնի անուամբ տօնն;*

*զոր մեր եկեղեցին ամեն տարի կը տօնէ Ս. Աստուածածնի Վերափոխման տօնէն տասն եւ հինգ օր առջը եկած Կիւրակէին ։*

**Տիեզերական Ժողով Նիկիոյ.** — *Այս Տիեզերական առաջին ժողովն է, որ գումարեցաւ ի Նիկիա 325 Թըւականին, ժողովմամբ երեք հարիւր ութ եւ տասն Հայրապետաց, ուր համաձայնութեամբ վճռուեցաւ, թէ Որդին Աստուած, Հօր համազօր եւ համագոյ է, այսինքն՝ Որդին Միածին է նոյն ինքն ի բնութենէ Հօր ։*

*Այս ժողովին մէջ Արիոս Հերետիկոս դատապարտըուեցաւ եւ անոր մոլորութիւնը հերքուեցաւ ։*

*Նիկիոյ Տիեզերական Ժողովը սահմանեց քրիստոնէական Հաւատոյ Հանգանակը, զոր Հայաստանեայց եկեղեցին նոյնութեամբ պահած է ցայսօր ժամանակի ։ Այս Ժողովը սահմանեց նաեւ եկեղեցական ինչ ինչ կանոններ ։*

**Տօն Եկեղեցւոյ ի Նաւակատիս Ս. Խաչին.** — *Դշխոյն Հեղինէ Խաչափայտը գտնել տալէ յետոյ՝ խաչելոյն Յիսուսի գերեզմանին վրայ շինել տուաւ տաճար մը՝ Գողգոթայի եւ Խաչափայտին գտնուած տեղւոյն միջեւ. եւ յաւարտ շինութեան՝ օծման նաւակատեաց հանդէսը կատարուեցաւ. այս պատճառաւ սահմանուեցաւ Ս. Խաչի Նաւակատեաց օրը կատարել տաճարին օծման տարեդարձի տօնը ։*



## ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆՔ

### Կիւրակէից եւ շաբաթամէջ գլխաւոր տօնից՝ Սկսեալ ի Խաչվերացէ մինչ ցՏօն Ծննդեան Փրկչին մերոյ Եւ Տեառն Յիսուսի Քրիստոսի.

*Խաչվերացի եօթնեկին երկուշաբթի, ուրբաթ եւ շաբաթ օրերը «Խաչի», իսկ երեքշաբթի, չորեքշաբթի եւ հինգշաբթի օրերը «Եկեղեցւոյ» տօն կը կատարէ եկեղեցին։*

Տօն Եօթանասուն եւ Երկու Աշակերտաց Քրիստոսի. *— Մեր Փրկիչը՝ բաց յերկոտասան Առաքելոց, զորս ինքն ընտրեց, յանուն իւր հաւատացելոց խմբէն ընտրեց նաեւ եօթանասուն եւ երկու աշակերտ, եւ անոնց տալով պէտք եղած պատուէրներն ու հրահանգները՝ երկու երկու յուղարկեց այն ամեն քաղաքներն ու գիւղերը, ուր ինքն պիտի երթար, պատրաստելու համար ժողովուրդն՝ ի լուր բանին ճշմարտութեան եւ ի հաւատս Աստուածորդւոյն։*

*Քրիստոսի եօթանասուն եւ երկու աշակերտներէն էին Մարկոս եւ Ղուկաս Աւետարանիչք։*

Չորս Աւետարանիչք. *— Հայաստանեայց եկեղեցին ի մասնաւորի կը տօնէ չորս Աւետարանիչներն, որոնք Քրիստոսի Տեառն մերոյ Ծննդեան եւ Անոր երկրաւոր կենաց, գործոց, հրաշից եւ քարոզութեանց պատմութիւնը գրած, նաեւ Անոր չարչարանաց, խաչելութեան, մահուան, թաղման, յարութեան եւ համբարձ-*

*ման նկարագիրն ի գիր արձանացուցած են առաջնորդութեամբ Հոգւոյն Սրբոյ ։*

**Տօն՝ Հրեշտակապետացն Գաբրիէլի եւ Միքայէլի եւ ամենայն երկնային զօրաց ։** — *Եկեղեցին ի պատիւ հոգեղէն զուարթնոց կը կատարէ Հրեշտակապետաց եւ Հրեշտակաց տօնը անոր համար՝ որ այս էակներն կը կենան հանապազ Աստուծոյ առջեւ ի կատարումն հրամանաց Նորա, եւ անդադար զԱստուած կը փառաբանեն յերկինս, եւ ո՛չ միայն մեզ համար առ Տէր կը բարեխօսեն, այլեւ կ'ուզեն որ մարդիկ հաղորդ լինին երկնից երանութեանց ։*

## Տօն Ամենայն Սրբոց՝ Հնոց եւ Նորոց, Յայտից եւ Անյայտից ։

*Եկեղեցւոյ յիշատակած սուրբերէն զատ կը գտնուին նաեւ ա՛յնպիսի ընտիր անձնաւորութիւնք, որոց նահատակութիւնն կամ սրբակեցութիւնը մնացած է անյայտ, մանաւանդ ընդդէմ քրիստոնէութեան յարուցուած սաստիկ հալածանաց ժամանակները ։ ուստի եկեղեցին սահմանած է կատարել զտօն ամենայն Սրբոց, որպէս զի այնպիսեաց յիշատակն եւս կատարուի յեկեղեցւոջ ։*

## Առաջին Լուսաւորիչք Հայոց Թադէոս Եւ Բարթուղիմէոս Առաքեալք ։

*Թադէոս եւ Բարթուղիմէոս Առաքեալք իրենց անձնադիր քարոզութեամբ տարածեցին քրիստոնէութիւնը*

բոլոր հայաբնակ գաւառները, որով Հայաստանեայց Եկեղեցւոյ հիմնադիրք եղան այս առաջին լուսաւորիչք, ինչպէս Վարդան Վարդապետ երկոտասան Առաքելոց համար երկասիրած շարականաւ կ'երգէ «Հայրատունկ այգւոյն հրեղէն պարիսպք եւ բարձր աշտարակ, ոսկեղէն բաժակք եւ ժիր մատռուակ, Հայաստանեայց Հայր հոգեւոր Բարթուղիմէոս եւ Թադէոս, բարեխօս լերուք առ Տէր վասն անձանց մերոց։»

Այս երկու Առաքելոց առաջինը՝ Թադէոս նահատակուեցաւ, և երկրորդը՝ Բարթուղիմէոս մորթազերծ մահուամբ մարտիրոսացաւ։

Ս. Յակոբ Հայրապետ Մծբնայ. — *Ս. Յակոբ քեռորդի էր Ս. Լուսաւորչին, որ Նիկիոյ Տիեզերական Ժողովոյ մէջ ներկայ էր իբրեւ ժողովական Հայրապետ, եւ յօրինած է իմաստալից ու հոգեշահ ճառեր՝ վասն քրիստոնէական հաւատոյ եւ բարի վարուց։*

*Եկեղեցին մասնաւոր հանդիսիւ կը կատարէ այս երանելի Հայրապետին յիշատակը՝ առնելով բարեխօս ժամանամահի եւ այլ դժնդակ հիւանդութեանց։*

Աբգար. — *Հայոց մէջ եղած է առաջին հաւատացողն ի Քրիստոս Յիսուս, եւ մկրտուած ի ձեռն Թադէոս Առաքելոյն, որ բարեպաշտական կենօք փայլեցաւ եւ բազմաթիւ Հայոց քրիստոնեայ դառնալուն առաջնորդ հանդիսացաւ։*

Դաւիթ Մարգարէ եւ Յակոբ Տեառն Եղբայր Առաքեալ. — *Դաւիթ իբրեւ թագաւոր օրինակ էր Աստուած-Որդւոյն, որոյ համաշխարհական թագաւորութիւնը կը ցուցնէր։ Դաւթի թագաւորական ցեղը հոգեւորապէս կենդանացաւ յանձին Միածին Որդւոյն Աստուծոյ, զի*

Քրիստոս ըստ մարմնոյ էր զաւակ Դաւթի, ուստի եւ Քրիստոս կոչուած է Ս. Գրոց մէջ «Որդի Դաւթի», եւ Դաւիթ «Աստուածահայր Մարգարէ»։

Յակոբ Ալփեայ Առաքեալն՝ որ Քրիստոսի մերձաւոր ազգականներէն մին էր, կոչուած է «Տեառն Եղբայր», կը կոչուի նաեւ «Արդար»։ Սա եղաւ Երուսաղէմի առաջին Եպիսկոպոսն, որ քարկոծմամբ նահատակուեցաւ Քրիստոսի 62 թուականին։

Ստեփանոս Առաջին Մարտիրոս. — Ստեփանոս էր մին այն եօթն Սարկաւագներէն, զորս Առաքեալք ձեռնադրութեամբ կացուցին ի պաշտօն սպասաւորութեան Սրբութեան Սեղանոյն, ի պահպանութիւն եկեղեցական գոյից եւ ստացուածոց եւ ի խնամածութիւն կարօտելոց։ Սա քրիստոնէական հաւատով, յուսով եւ սիրով լցուած հաւատացեալ մ'էր, որ զքրիստոնէութիւնն աներկիւղ քարոզելուն եւ Հրէից խստասրտութիւնը յանդիմանելուն համար, քարկոծմամբ նահատակուեցաւ, եւ եղաւ քրիստոնէական հաւատոյ առաջին մարտիրոսը։

Առաքեալք Պետրոս եւ Պօղոս. — Պետրոս՝ որ երբեմն կը կոչուէր «Սիմօն-Շմաւոն», եռանդուն սրտիւ ճշմարիտ վկայ եղաւ Ս. Աւետարանի եւ իւր բնատուր համարձակախօսութեամբ Պէնտէկոստէի օրը քարոզեց Քրիստոսի մահն ու յարութիւնը եւ չատերը դարձուց ի հաւատս Քրիստոսի։ Մինչդեռ իւր առաքելութեան պաշտօնը կը կատարէր արժանապէս, Ներոն կայսեր յարուցած հալածանաց ժամանակ՝ գլխիվայր խաչեցաւ։

Պօղոս՝ որ կը կոչուէր Սաւուղ-Սօղոս, քրիստոնէութեան ոխերիմ թշնամի էր։ Քրիստոս յայտնուեցաւ

*անոր հոգւոյն, տուաւ անոր միտք, սիրտ, զօրութիւն եւ կարողութիւն, որ լինի պաշտպան քրիստոնէութեան եւ սատարող տարածման քրիստոնական հաւատոյ։ Պօղոս աւետարանական քարոզութեամբն ատելի եղաւ Հրէից, եւ՝ երկիցս բանտարկուելէ յետոյ՝ հրամանաւ Ներոնի գլխատուեցաւ։*

**Որդիք Որոտման Յակոբոս Առաքեալ եւ Յովհաննէս Աւետարանիչ.** — *Զեբեդէոսի որդիք Յակոբոս եւ Յովհաննէս՝ կոչուեցան «Բաներեգէս» — Որդիք Որոտման։*

*Յակոբոս ականատես եղաւ Քրիստոսի պայծառակերպութեան, Պետրոսի եւ Յովհաննու հետ, եւ Պաղեստինու մէջ զՔրիստոս աներկիւղ քարոզելուն համար, հրամանաւ Հերովդիսի սպանուեցաւ 44 թուականին, եւ Առաքելոց դասուն մէջ առաջին մարտիրոսն եղաւ։*

*Յովհաննէս՝ որ գրեց յանուն իւր Ս. Աւետարանը, էր Քրիստոսի սիրելի աշակերտն, որ յետ վերափոխման Տիրամօր Ս. Կուսին հաստատուեցաւ յԵփեսոս, եւ այն կողմերը գտնուած եկեղեցեաց պայծառութեան համար աշխատեցաւ, եւ Քրիստոսի 95 թուականին աքսորուեցաւ Պատմոս կղզին, ուր գրեց Յայտնութեան գիրքը։*

*Յովհաննու Աւետարանչի տօնի օրը «Մանկունք»ի շարականէն յետոյ՝ կը կարդացուի Յովհաննու Առաքելոյ եւ Աւետարանչի հանգիստը։*

*Ի վերեւ յիշուած այս չորս աւագ տօներուն՝ զորս սահմանած է Յովհան Օձնեցի Ս. Հայրապետը, նախընթաց երեկոյները Նախատօնակ կ'ընէ եկեղեցին, եւ հետեւեալ օրը գիշերապաշտօնի ժամերգութեան ժամա-*

նաեւ «Թագաւոր յաւիտեան «Այսօր դասք» ի երգով անոնց յիշատակը կը տօնէ պատշաճաւոր հանդիսիւ։

Այս ամեն յիշուած Սուրբերէն զատ՝ կան նաեւ ուրիշ Սուրբեր, որոց յիշատակը կը կատարէ եկեղեցին ըստ Տօնացուցի։



## ՊԱՀՔ

Մեր Փրկիչն Յիսուս Քրիստոս՝ որ ըստ ամենայնի միակ օրինակ է մեզ, քառասուն օր եւ քառասուն գիշեր անապատին մէջ ծոմ պահեց մարդկային ազգի փըրկութեան գործոյն համար. եւ ինչպէս պատուիրեց մեզ ողորմութիւն տալ եւ աղօթել, նոյնպէս ծոմ, պահք պահել, նաեւ զգուշացուց մեզ Փարիսեցւոց պահք [1] պահելուն ժամանակ ցոյց տուած կեղծաւորութենէն։

Քրիստոնէական եկեղեցին ծոմապահութիւնը կամաւոր թողլով՝ սահմանեց սրբապահութիւն, այսինքն՝ պահոց օրերը չուտել մսեղէն, ձկնեղէն եւ կաթեղէն կերակուրներ, եւ չգործածել գրգռիչ ըմպելիներ։

Սրբապահութիւնն ունի մասնաւոր ժամանակամիջոցներ՝ տնուններ, ինչպէս են օրական, շաբաթական եւ քառասնորդական պահքեր։

Օրական պահք են՝ ուտիքի եօթնեկին մէջ չորեք-

---

[1] Փարիսեցիք ամեն հինգշաբթի՝ ի յիշատակ Մովսիսի Սինա լեռն ելնելուն, եւ ամեն երկուշաբթի՝ անոր լեռնէն իջնելուն ծոմ-պահք կը պահէին, եւ իրենց նոյն բարեպաշտութիւնն արտաքին նշաններով ցոյց կուտային մարդոց, քուրձ հագնելով, եւ իրենց գլխուն ու երեսին վրայ մոխիր սրսկելով։

*շաբթի եւ ուրբաթ օրերը. չորեքշաբթի՝ ի յիշատակ մատնութեան եւ ուրբաթ՝ ի յիշատակ խաչելութեան Քրիստոսի ։*

*Շաբաթական հնգօրեայ պահքն է՝ Հոգեգալստեան([1]) եւ Ս. Գրիգոր Լուսաւորչի Գիւտ Նշխարաց տօներէն յառաջ սրբապահութիւնները, որ կ'ըսուին «Ամառնային պահք» ։*

*Վարագայ Ս. Խաչի եւ Ցիմնակաց սրբապահութիւնը կ'ըսուի «Աշնանային պահք». իսկ Ս. Յակոբայ եւ Առաջաւորաց պահոց կ'ըսուի «Ձմեռնային պահք» ։*

*Նաւակատեաց պահք կ'ըսուին տարւոյն հինգ տաղաւարներէն առաջ շաբաթական հնգօրեայ սրբապահութիւնը, որոցմէ յետոյ կու գայ Նաւակատեաց օրը ։*

*Թէպէտեւ շաբաթապահոց օրերն՝ որոնք ապաշխարանաց օրեր են, չմատուցուիր Ս. Պատարագ, սակայն Հոգեգալստեան, Ս. Գրիգոր Լուսաւորչի, Վարագայ Խաչի եւ Ս. Յակոբայ շաբաթապահոց հինգ աւուրց մէջ Ս. Պատարագ մատուցանելու սովորութիւն եղած է ։*

*Քառասնորդական պահքն է այն քառասնօրեայ սրբապահութիւնը, զոր առաքեալք սահմանեցին՝ մեր Փրկչին չարչարանաց օրերէն առաջ պահելու՝ ի յիշատակ ծոմապահութեան Քրիստոսի յանապատին ։*

*Հաւատացեալ քրիստոնեայն՝ ինչպէս պարտաւոր է ըստ տիրական պատուիրանին ողորմութիւն տալու եւ աղօթք ընելու, նոյնպէս եւ պահք պահելու ։*

---

[1] Այս շաբաթական պահքը աւանդաբար կը կոչուի Եղիական պահք ։

# ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

---

## Խորհուրդք Ս. Եկեղեցւոյ

Հայաստանեայց մի, սուրբ, կաթողիկէ եւ առաքելական եկեղեցին ունի եօթն սրբարար խորհուրդ, որոնք միջոցներ են անտեսանելի շնորհաց Հոգւոյն Սրբոյ՝ եւ որոց ի հոգիս մեր ըրած ներգործութիւնք՝ ըստ որում գաղտնիք են մեզ համար, կոչուած են «Խորհուրդք»։

Եկեղեցւոյ խորհուրդք են՝

Մկրտութիւն, Դրոշմ, Ապաշխարութիւն, Հաղորդութիւն, Պսակ Ամուսնութեան, Կարգ կամ Ձեռնադրութիւն, Այցելութիւն հիւանդաց։

### Ա. Մկրտութիւն

Մկրտութիւնն է Ս. Խորհուրդ Եկեղեցւոյ, որով երեխայն յանուն Ամենասուրբ Երրորդութեան ի ջուրս աւազանի երից ընկղմամբ կը սրբուի սկզբնական մեղքէն, եւ Հոգւով Սրբով կը վերածնի ի հոգեւոր կեանս, կը լինի որդեգիր Հօրն երկնաւորի. ժառանգ արքայութեան երկնից եւ անդամ քրիստոնէական եկեղեցւոյ։

Երեխայն կը մկրտուի աւազանին մէջ անոր համար՝ որ եկեղեցին մայր է ամենայն հաւատացելոց, եւ աւազանն՝ օրինակ է արգանդի մօրն-եկեղեցւոյ, յորմէ երեխայն կը ծնանի ի հոգեւոր կեանս։

*Աւազանին ջուրն յորում կը մկրտուի երեխայն, օրհնութեամբ եւ խաչանիշ հեղմամբ Ս. Միւռոնի՝ կը լինի նուիրական ջուր եւ մաքրութեան նիւթ։*

*Երեխային գլխուն վրայ կը դրուի կարմիր եւ ճերմակ թելերէ ոլորուած պսակ մը, որ կ'ըսուի Նարօտ, որոյ գործածութիւնն սկսուած է Առաքելոց դարէն, յորում նորադարձ քրիստոնէից գլխուն վրայ կը դրուէր նարօտն ի նշան ճշմարիտ աստուածածանօթութեան։*

*Կնքահօր ձեռաց մէջ վառուած մոմերը կը նշանակեն երեխային քրիստոնէական հաւատոյ լուսաւորութիւնը։*

## Բ. Դրոշմ

*Դրոշմն է Ս. Խորհուրդ եկեղեցւոյ, որով երեխայն յետ մկրտութեան արտաքին օծմամբ սրբալոյս Միւռոնի կ'ընդունի ի շնորհաց Հոգւոյն Սրբոյ ներքին օծումը, կը զօրանայ պահելու քրիստոնէական հաւատքը, կը սպառազինի յաղթելու մեղաց եւ փորձութեանց, որով դրոշմեալը կը կոչուի «Զինուոր Քրիստոսի»։*

*Ս. Միւռոնն է իւղ՝ քաղցրաբոյր ծաղկանց հիւթերով խառնուած, զոր կ'օրհնէ ընդհանրական Հայրապետն ամենայն Հայոց՝ որ ի Ս. Էջմիածին։ (1)*

## Գ. Ապաշխարութիւն

*Ապաշխարութիւնն է Ս. Խորհուրդ եկեղեցւոյ, որով*

---

[1] Կիլիկիոյ եւ Աղթամարայ մասնաւոր Կաթողիկոսունք եւս կ'օրհնեն Ս Մեռոնն՝ իրենց հոգեւոր հովուութեան յանձնուած վիճակին եւ թեմական գիւղերուն Ս. եկեղեցեաց համար։

քրիստոնեայն յետ մկրտութեան գիտակցաբար գործած
մեղքերը քահանային պատմելով թողութիւն կը խնդ-
րէ, եւ կ՚ընդունի զայն ի ձեռն արձակման քահանա-
յին ։

Մեղուցեալ քրիստոնեայն պարտի մանրամասնաբար
պատմել իւր գործած մեղքերն, առանց մի թեթեւ մեղք
իսկ ծածկելու կամ պահելու քահանայէն, որպէս՛զի
իբրեւ հոգեւոր բժիշկ սահմանէ բարոյական դեղեր, ո-
րովք մեղուցեալը բժշկուի հոգեկան հիւանդութենէն ։

Քահանայն՝ ըստ որում իշխանութիւն ունի լսելու
մեղաց խոստովանութիւնն, որ ապաշխարութեան խոր-
հրդոյն մի կարեւոր մասն է, եւ խոստովանողին վրայ
յանուն ամենակալին Աստուծոյ ձեռք դնելով թողու-
թիւն տալու, կ՚ըսուի «Խոստովանահայր», եւ խոս-
տովանողն՝ որ իբրեւ հնազանդ որդի պարտաւոր է իւր
հոգեւոր հօր խրատուց ու յորդորմանց անսալու եւ կը-
րելու իւր վրայ դրուած ապաշխարանքը՝ աղօթքով,
պահքով, ողորմութեամբք եւ վճարմամբք, կ՚ըսուի
«Խոստովանորդի» ։

## Դ. Հաղորդութիւն

Հաղորդութիւնն է Ս. Խորհուրդ եկեղեցւոյ, որով
ընդ տեսակաւ հացի եւ գինւոյ կը ճաշակեմք Յիսուսի
Քրիստոսի Տեառն մերոյ Մարմինն եւ Արիւնն՝ ի քա-
ւութիւն եւ ի թողութիւն մեր մեղաց եւ ի ժառանգու-
թիւն յաւիտենական կենաց ։

Հաղորդութիւնն կը նշանակէ կցորդութիւն կամ
մասնակցութիւն, որովհետեւ քահանայն Ս. Պատարա-

դի (1) ժամանակ սրբագործելով զհացն եւ զգինին, որ կը փոխարկի ի ճշմարիտ Մարմին եւ Արիւն Քրիստոսի, եւ մեք ճաշակելով կը մասնակցիմք Մարմնոյ եւ Արեան Տեառն մերոյ ։

## Ե. Պսակ Ամուսնութեան

Պսակ ամուսնութեան է Ս. Խորհուրդ եկեղեցւոյ, որով երիտասարդն եւ կոյսն փոխադարձ հաճութեամբ եւ ազատ կամօք, աղօթիւք եւ օրհնութեամբ քահանային կը կենակցին ընդ միմեանս, ցմահ անմեկնելի ուխտ եւ երդում ընելով առաջի Աստուծոյ եւ մարդկան, եւ այս միութիւն օրինակ է Քրիստոսի իւր եկեղեցւոյն հոգեւոր անբաժան միաւորութեան ։

Քահանայն՝ առն եւ կնոջ ձեռնտուութեան օրհնութենէ յառաջ կ՚օրհնէ նշանը, որ կը նշանակէ այն ինչ երիտասարդին այն ինչ կուսին խօսեցեալ լինելը, որ պիտի լինի մի օր անոր լծակիցն եւ օգնականը. կ՚օրհնէ նաեւ անոնց հալաւը ։

Քահանայն ի ժամու օրհնութեան պսակի՝ կը դնէ փեսային եւ հարսին գլխուն վրայ Նարօտ, իբրեւ պսակ՝ զոր եւ յատուկ արարողութեամբ կը բառնայ, եւ նորապսակ ամոլից կու տայ օրհնեալ գինիէն, որ է յիշատակ Քրիստոսի այն հրաշքին, զոր առաջին անգամ գործեց Գալիլիոյ Կանայ քաղաքի հարսանեաց մէջ, ջուրը փոխելով ի գինի ։

---

[1] Ս. Պատարագի խորհրդաւոր արարողութեան վրայ համառօտ բացատրութեամբ պիտի խօսուի մասնաւորապէս ։

## Զ. Կարգ կամ Ձեռնադրութիւն

Կարգ կամ ձեռնադրութիւնն է Ս. Խորհուրդ եկեղեցւոյ, զոր ձեռնադրութեամբ եւ օծմամբ Եպիսկոպոսին ընծայեալը կ՚ընդունի, մատակարարելու համար եկեղեցւոյ փրկարար խորհուրդները, կատարելու եկեղեցական պաշտամանց վերաբերեալ արարողութիւնները եւ քարոզութեամբ բանին կենաց մխիթարելու ժողովուրդը։

Յիսուս Քրիստոս ճշմարիտ Քահանայապետն իւր քահանայութիւնն հաստատած եկեղեցւոյն մէջ մշտընջենաւորելու համար հաստատեց Ձեռնադրութեան Խորհուրդը, երբ իւր առաքեալներն հանելով Ձիթենեաց լեռը՝ օրհնեց, որպէս զի իւր հաստատած եկեղեցին կառավարեն, եւ ձեռնադրութեամբ եկեղեցական պաշտօնէութիւնը կացուցանեն Նուիրապետական դասակարգութեամբ։

Եպիսկոպոսը վեց աստիճանները ձեռնադրութեամբ միայն կու տայ ընծայելոյն, իսկ քահանայք թէ՛ ամուրի եւ թէ՛ ամուսնաւոր, ինչպէս նաեւ Եպիսկոպոսք եւ Կաթողիկոսք ձեռնադրութեամբ եւ օծութեամբ կը կոչուին յաստիճան քահանայութեան՝ եպիսկոպոսութեան եւ հայրապետութեան։

Քահանայք կ՚ընտրուին թաղի մը եկեղեցւոյ եկեղեցականներէն եւ աշխարհականներէն, Եպիսկոպոսք՝ գաւառի մը եկեղեցական եւ աշխարհական դասէն, իսկ Կաթողիկոսք բոլոր վիճակաց՝ որոց վրայ առ հասարակ կը տարածուի հայրապետական իշխանութիւնը,

կ'ընտրուին եկեղեցական եւ աշխարհական դասուց ձայնակցութեամբ, այսինքն՝ համօրէն Հայոց ամբողջութենէն։

## Է. Այցելութիւն Հիւանդաց (1)

Այցելութիւն Հիւանդաց է Ս. Խորհուրդ եկեղեցւոյ, որ սահմանուած է հիւանդաց համար, որով քահանայն աղօթիւք բարեմաղթութիւններ կ'ընէ հիւանդին մեղաց թողութեան եւ անոր բժշկութեան համար, եւ ի պահանջել հարկին՝ քահանայն կը հրաւիրէ հիւանդն ի խոստովանութիւն եւ ի հաղորդութիւն Ս. Խորհրդոյ Մարմնոյ եւ Արեան։

Քահանայն այս խորհուրդը կը կատարէ հիւանդին վրայ ձեռք դնելով յանուն ամենակարողին Աստուծոյ, բժշկութեան Աւետարան կարդալով եւ Ս. Խաչիւ կամ Աւետարանաւ տեառնագրելով։ Կան եկեղեցիք, որք օրհնեալ իւղով կ'օծեն հիւանդին զգայարանքները, եւ «Վերջին օծում» կ'անուանեն այս խորհուրդը։

Այս եօթն խորհրդոց էական մասերն են Նիւթ եւ Ձեւ։ Նիւթ կ'ըսուի խորհրդոց մէջ գործածուած արտաքին եւ զգալի իրը։ Ձեւ կ'ըսուի հրամանակարգ խօսքը, զոր կ'արտասանէ խորհրդակատար պաշտօնեայն՝ ի կատարումն արարողութեան։ Ս. Խորհրդոց մատակարարներն են՝ եկեղեցւոյ հոգեւոր պաշտօնեայք։

## Սուրբ Պատարագ

Հաղորդութեան Ս. Խորհուրդը կ'ըսուի «Պատարագ»

(1) Այս խորհուրդն կը կոչուի նաեւ վերջին Օծումն։

անոր համար՝ որ հին օրինաց ժամանակ կատարուած զոհից նման հրապարակաւ կը մատուցուի Աստուծոյ, եւ անոր համար նաեւ՝ որ Քրիստոս խորհրդապէս կը պատարագուի իւր մարմնովն եւ արեամբ Ս. սեղանին վրայ, ինչպէս ի Գողգոթա՝ ի սեղան Խաչի պատարագեցաւ եւ մատուցաւ պատարագ Աստուծոյ ։

## Արարողութիւնք Ս. Պատարագի

Պատարագիչն՝ որ եւ ժամարար կ'ըսուի սովորաբար, թէ՛ լինի եպիսկոպոս եւ թէ՛ լինի քահանայ, յետ հոգեւոր եւ մարմնաւոր պատրաստութեան՝ խոստովանութեամբ եւ աղօթիւք կը մտնէ աւանդատունը(1), ուր Խորհրդատետրին մէջ նշանակուած սաղմոսն եւ աղօթքը կարդալէ յետոյ կը զգեստաւորի ։

Ս. Պատարագի զգեստուց ձեւը գլխաւորապէս առնուած է Հին Կտակարանի մէջ յիշուած Ահարոնեան քահանայական զգեստէն, սակաւ ինչ բարեփոխմամբ ։

Երբ ժամարարը կը սկսի զգեստաւորուիլ, դպիրք կ'երգեն՝ Խաչատուր Վարդապետի երկասիրած «Խորհուրդ խորին» շարականը, որ կը պարունակէ իւր մէջ ութ պարբերութիւն .

Առաջնոյն մէջ՝ կը յիշուի Հրեշտակաց ստեղծագործութիւնը ։

---

[1] Աւանդատուն կ'ըսուի ժամարարին զգեստաւորելու տեղը, որ պահարանին մէջ կամ խորանին ետեւի կողմը յատկացուած է, ուր կը պահուին ամեն օր գործածելի Ս. անօթք, զգեստք եւ այլն ։

Երկրորդին մէջ՝ Ադամայ ստեղծումն եւ անոր փառօք զարդարուիլը ։

Երրորդին մէջ՝ Աշխարհի փրկութիւնն, եւ չարչարանօք Միածնի Որդւոյն Աստուծոյ՝ մարդկային բնութեան վերանորոգումը ։

Չորրորդին մէջ՝ Հոգւոյն Սրբոյ Առաքելոց վրայ իջնելը, եւ անոր մեր վրայ եւս հեղման մասին մեր աղաչանքը ։

Հինգերորդին մէջ՝ Եկեղեցւոյ սրբութիւնը ։

Վեցերորդին մէջ՝ Քրիստոսի փրկագործ խաչելութիւնը ։

Եօթներորդին եւ ութերորդին մէջ՝ Քահանայական զգեստուց նշանակութիւնն եւ առ այն՝ մեր խնդրուածքն առ Աստուած ։

Իսկ ամենէն վերջը՝ «Թագաւոր երկնաւոր» շարականաւ կը խնդրեմք, որ Յիսուս Քրիստոս յաւիտենական Թագաւորն անշարժ պահէ իւր եկեղեցին, եւ իւր Սուրբ անուան երկրպագու հաւատացեալները խաղաղութեան մէջ պահէ ։

Ժամարարը նախ կը դնէ ի գլուխ սաղաւարտ, որ է նշան փրկութեան եւ հոգեւոր զրահ պատերազմելու ընդդէմ սատանայական զօրութեան ։

Շապիկ՝ որ է հանդերձ մաքրութեան յաղթոյ մեղաց ։

Փորուրար՝ որ կը նշանակէ բառնալ զլուծ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի եւ զգենուլ զարդարութիւն ։

Գօտի՝ որ կը նշանակէ կամար հաւատոյ, որով կրօնական զօրութիւն կատարելու ծառայական պաշտօնը ։

*Բազպան՝ նշան զօրութեան ձեռաց, սրբութեամբ ծառայելու Աստուծոյ ։*

*Վակաս՝ կը նշանակէ թէ Աստուծոյ զօրութիւնը պահապան է՝ Թիկանց վրայ կրելու համար արդարութեան լուծը ։*

*Շուրջառ՝ որ եւ կ'ըսուի Նափորտ, օրինակ է ծիրանի հանդերձի՝ զոր հագուցին Քրիստոսի՝ չարչարանաց օրը, եւ որ քահանայն առնելու ժամանակ կ'աղաչէ զԱստուած՝ պարսպելու զինքն ընդդէմ ներգործութեանց չարին ։*

*Եմիփորոնն՝ որ յունական բառ է, Եպիսկոպոսը միայն կը կրէ՝ շուրջառին վրայ խաչաձեւ առած, ի նշան լըրման քահանայական եօթներորդ աստիճանին ։*

*Թագն է երկփեղ խոյր, որ Ահարոնեան խոյրի ձեւէն առնուած եւ ձեւը սակաւ ինչ բարեփոխուած է, զոր Եպիսկոպոսն եւ Կաթողիկոսը, միայն կը գործածէ ։*

*Արտախուրակ կ'ըսուին Թագէն կախուած երկու ծայրեր, որոնք Թագին կապերն են ։*

*Կոնքեռն է հովուական մախաղ, զոր եպիսկոպոսներէն ոմանք կը գործածեն՝ հրամանաւ Հայրապետին ամենայն Հայոց, եւ Հայրապետն՝ իբրեւ հովուապետ իրաւունք ունի զայն ի կիր արկանելու ։*

*Հուսկ ապա՝ գօտիէն կը կախէ մի Թաշկինակ, ձեռաց լուացման ժամանակ սրբելու համար, եւ կը հագնի մի մաքուր հողաթափ եկեղեցականաց յատուկ ։*

*Ժամարարը Ս. սեղանին մերձենալէն առաջ՝ առաջնորդութեամբ սարկաւագին եւ երկու մոմակալաց կուգայ բեմին առջեւ, ուր «Լուացից սրբութեամբ զձեռս իմ» սաղմոսն փոխն ի փոխ կ'ըսէ սարկաւագին հետ*

*եւ կը լուանայ ձեռքերն , միտքն օտար մտածումներէ եւ սիրտը չար խորհուրդներէ մաքրելու ի նշան ։ Կը դառնայ դէպ առ ժողովուրդն եւ առաջի ամենեցուն կը խոստովանի հրապարակաւ (1) եւ կ'աղաչէ զհարս (զեկեղեցականս) եւ զեղբարս (զհաւատացեալ ժողովուրդս), որ իրեն համար թողութիւն խնդրեն Աստուծմէ։ Ներկայ եկեղեցականներէն մին Աստուծոյ ողորմութիւնը կը մաղթէ անոր վրայ , թողութիւն շնորհելու անոր մեղաց եւ յառաջիկային ի մեղաց ազատ պահելու ։ Ժամարարը փոխադարձաբար կը բարեմաղթէ , որ Աստուած թողութիւն շնորհէ ամենուն մեղաց , եւ տայ ժամանակ ապաշխարելու եւ բարեգործութիւն ընելու , եւ ի պատասխան խնդրանաց դպրին՝ կը մաղթէ ըսելով « Յիշեալ լիջիք առաջի անմահ Գառինն Աստուծոյ » ։*

*« Աղաղակեցէք » փոխ սաղմոսէն յետոյ՝ ժամարարը կ'ըսէ « Ի մէջ տաճարիս » աղօթքը եւ « Մտից առաջի սեղանոյ առ Աստուած » սաղմոսը սարկաւագին հետ փոխն ի փոխ , եւ բեմն ելնելով՝ սեղանին առջեւ կեցած կ'ըսէ « Ի յարկի սրբութեան » աղօթքը ։*

*Վարագոյրը կը քաշուի այս պահուն , եւ քահանայն գլխաբաց կ'ընթեռնու Ս . Գրիգոր Նարեկացւոյ երկու աղօթքն՝ ուղղեալ առ Հոգին Սուրբ Աստուած , խնդրելու համար Հոգւոյն Սրբոյ գործակցութիւնը ։*

---

[1] Եկեղեցւոյ նախնի սահմանադրութիւնն էր, որ մեղուցեալք հրապարակաւ ի մէջ եկեղեցւոյ պարտաւոր էին խոստովանել իրենց մեղքերն ի բուժումն զայթակղեալ մտաց, եւ այժըմ խափանուած է հրապարակական խոստովանութիւնը, պահուելով սակայն առանձնական խոստովանութիւնը։

Երբ կը սկսի մեղեդին (1), քահանայն յետ ընթերցման աղօթից՝ սրբագործութեան համար յատկապէս պատրաստուած անխմոր եւ թարմ հացն՝ որ կը բուրէ նշխար-սպաս, եւ միշտ կը կրէ Քրիստոսի խաչելութեան պատկերը, կը դնէ սկիհին մաղզմանին վրայ ըսելով, «Յիշատակ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի... եւ կը լնու գինին սկիհին մէջ խաչաձեւ՝ ըսելով, «Ցաղագս յիշատակի փրկագործ տնօրէնութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի...» ։ Վերջը կը կարդայ «Տէր Աստուած մեր որ զերկնաւոր հացդ» Ոսկեբերանի աղօթքը, խնդրելով ի Տեառնէ որ օրհնէ առաջադրեալ հացն ու գինին եւ յիշէ թէ՛ Ս. Պատարագ մատուցանողն եւ թէ՛ զանոնք, որոց համար կը մատուցուի Ս. Պատարագը ։ «Տէր թագաւորեաց վայելչութիւն զգեցաւ» սաղմոսով կը ծածկէ սկիհը եւ անոր վրայ տեառնագրելով կ՚ըսէ երիցս՝ «Հոգին Սուրբ եկեսցէ ի քեզ, եւ զօրութիւն Բարձրելոյն հովանի լիցի ի վերայ քո». կը մաղթէ ժամարարն որ Հոգին Սուրբ յառաջի եդեալ հացն եւ գինին արժանապէս փոխարկէ ի Մարմին եւ յԱրիւն Տեառն մերոյ ։

Պատարագիչը «Խունկ մատուցանեմ առաջի քո, Քրիստո՛ս, բուրումն հոգեւորական» ըսելով կը խընկարկէ զընծայն եւ խնկարկութեամբ կ՚իջնէ սարկաւագին հետ յատեան, եւ ապա կ՚ելնէ սեղան. եւ յաւարտ խնկարկութեան սարկաւագին՝ ի մէջ եկեղեցւոյ

---

[1] Եթէ Եպիսկոպոս է ժամարարը, դեռ վարագոյրը չքաշուած ծնգաց վրայ գալով կ՚ընթեռնու նոյն երկու աղօթքը, եւ նոյն միջոցին դպիրք կ՚երգեն «Ընտրեալդ յԱստուծոյ ո՛վ երջանիկ Սուրբ Քահանայ կամ Հայրապետ»։

գալով կը ձայնէ «Օրհնեա՛ Տէր» [1]։ Ժամարարը կ'ըսէ, «Օրհնեալ թագաւորութիւնն»։ Այս պահուն կը սկսի Երախայից Պատարագն [2], որ կը յանգի մինչ ցվերաբերումն։

Դպիրք կ'երգեն ժամամուտ «Միածին Որդի եւ Բանդ Աստուած եւ անմահ էութիւն», կամ ուրիշ ժամամուտ մը ըստ պատշաճի աւուր։ Ժամամուտ կը նշանակէ մուտ ժամու Ս. Պատարագի, յորում կը սկսի Պատարագը։ Սարգկաւագը կը ձայնէ «Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք»․ Ժամարարը օրհնութեամբ կու տայ խաղաղութիւն, ա՛յն խաղաղութիւնը՝ զոր տուաւ Քրիստոս իւր աշակերտաց ըսելով, «Զխաղաղութիւն զիմ տամ ձեզ, զխաղաղութիւն թողում ձեզ. . . ։»

Եւ որպէս զի ժամարարն եւս լինի մասնակից նոյն օրհնութեան, դպիրք ի դիմաց ժողովրդեան կ'երգեն «Եւ ընդ հոգւոյդ քում»։ Սարկաւագն կը հրաւիրէ զժողովուրդն յերկրպագութիւն Աստուծոյ, իսկ դպիրք կ'երգեն «Առաջի քո, Տէ՛ր»։

Պատարագիչն՝ Աստուծոյ ողորմութիւնն ու գթութիւնն ժողովրդեան վրայ հայցելու իմաստն ունեցող աղօթքն առ արտելէ վերջ՝ դպիրք Փոխ-Սաղմոսի մը ընկրգընաւորութեամբ Ճաշու շարականը կ'երգեն ըստ պատշաճի աւուր, եւ ժամարարն՝ ի ծածուկ կարդացած

---

[1] Սարկաւագը ժամարարին ուշադրութիւնը դարձնելու համար կ'ըսէ «Օրհնեա՛ Տէր», որպէս զի ժամարարը կարդայ ի ձայն ըսելիք մաղթանքը կամ տայ օրհնութիւնը։

[2] Երախայից Պատարագ կ'ըսուի «Օրհնեալ թագաւորութիւն» էն մինչ ցվերաբերումն։ Նաեւ Երախայից Պատարագ կ'ըսուի այն ամեն օրեր, յորս չմատուցուիր խորհրդաւոր Պատարագ։

աղօթքին վերջաւորութիւնը կարդալէ յետոյ՝ սարկաւագը կը գոչէ «Պրոսխումէ՛», որ կը նշանակէ վեր նայեցէ՛ք։ Դպիրք կ՚եղանակեն Երեքսրբեանն «Սուրբ Աստուած», առանց կցելու «Փառաւորեալ եւ օրհնեալ» երգն անոր համար՝ որ Ս. Պատարագի ժամանակ կարօտութիւն չունինք, որ եւ է սրբոյ մը բարեխօսութեան, զի ինքն Քրիստոս Յիսուս է այն միջոցին մեր միակ բարեխօսն առ Հայր Աստուած, որուն ժամարարը կը մատուցանէ մեր աղօթքը։

Երեքսրբեան երգի ժամանակ Ս. Աւետարանի վերաբերումն կ՚ըլլայ՝ սեղանին հիւսիսային կողմէն դէպ ի հարաւ առ ժողովուրդն։ Այս վերաբերումը կը նշանակէ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի աւետարանական քարոզութեան սկզբնաւորութիւնը, եւ ինչպէս Մովսէս Սինայի լերան վրայ Աստուծոյ պատգամներն առնլով բերաւ ժողովրդոց, նոյնպէս սարգաւագն առնըլով զՍ. Աւետարանն ի ձեռաց քահանային՝ որ օրինակ է յաւիտենական երկնաւոր քահանային՝ կը բերէ առ ժողովուրդն, կարդալու համար Աստուածային պատգամները։ Զկնի Երեքսրբեան երգին՝ սարկաւագը «Վասն խաղաղութեան ամենայն աշխարհի», երանեալ Ս. Հայրապետին, հոգեւոր պաշտօնէից, նաեւ ժողովրդոց համար բարեմաղթական քարոզ կ՚ըսէ, որոց յաւարտ ժամարարը կ՚ըսէ, «Զի ողորմած եւ մարդասէր ես»։ Այս պահուն կը կարդացուին Ս. Գրքի մարգարէական կամ պատմական գրուածներէն մաս մը եւ ապա առաքելական թղթեր։

Ս. Գրքի ընթերցումն կար Հրէից ժողովարաններուն մէջ, ուր Ս. Գիրքը ընթերցուածներու բաժնուած

տարին մի անգամ ամբողջովին կը կարդացուէր ծայրէ ի ծայր ։ Ս. Գիրքն ընթերցողը յոտս կը կենար եւ մեկնողը կը նստէր. ըստ այնմ՝ «Ցարեաւ ընթեռնուլ... եւ խփեալ զգիրսն՝ ետ ցպաշտօնեայն եւ նստաւ» ։

Ս. Գիրքը բացատրելու սովորութիւնը կ'երեւայ ի վաղ ժամանակաց սահմանուած, ուստի Հրեայք երբ կրօնական պաշտամանց համար կը հաւաքուէին, Հին Կտակարանէն մասեր կը կարդացուէին, որոնք կը վերջանային՝ մեկնութիւն տալով եւ անոնց վրայ քարոզ խօսելով ։

Քրիստոնէութեան առաջին դարուց մէջ, առաքեալք եւ անոնց յաջորդները կիւրակէ օրեր կը հաւաքուէին տեղ մը, ուր նախնի հաւատացեալք եւս ներկայ կը գտնուէին կրօնական պաշտամանց ։ Առաքեալք եւ անոնց յաջորդները կ'ընթեռնուին Ս. Գրքէն մասեր, եւ վերջը բացատրելով Ս. Գիրքը, կը խրատէին եւ կը հրահանգէին ժողովուրդը, նաեւ կը յորդորէին որ հաւատացեալք զգուշանան առօրեական մոլութիւններէ, եւ սիրով տանին վշտաց, չարչարանաց, ընչից եւ կենաց կորստեան ։

Այսպէս առաքեալք եւ անոնց յաջորդները՝ քրիստոնական հաւատոյ վարդապետութեան հետ կ'աւանդէին նաեւ Ս. Աւետարանի բարոյական խրատներն ի փրկութիւն հոգւոց հաւատացելոց, եւ ապա օրհնութեամբ հացի եւ գինւոյ՝ կը կատարուէր Պատարագի Ս. խորհուրդը եւ կը հաղորդուէին բոլոր հաւատացեալք ։

Եթէ Հին Ուխտի ժամանակ այնքան կարեւոր դատուած էր Ս. Գիրքը կարդալ եւ ուսուցանել կրօնական ճշմարտութիւնները, (քանի՛ օն) եւ առաւել կարի կա-

րեւոր է Նոր-Ուխտի՝ քրիստոնէութեան ժամանակ ընթեռնուլ Ս. Գիրքն եւ բացատրել ։

Յիսուս Քրիստոս մեր երկնաւոր Վարդապետն՝ իւր քարոզութեամբ ուսոյց գլխաւոր երեք առաքինութիւններ, որոնք անհրաժեշտ կարեւոր են մարդուս փրկութեան ։

Մեր Տէրն՝ ոչ միայն ինքն իւր առաքելական պաշտօնը կատարեց, այլեւ իւր քարոզութիւնները լսելու յաճախող անձերէն ընտրեց իրեն տասն երկու առաքեալ, որպէս զի լսեն իւր քարոզներն եւ երթան յաշխարհ ամենայն քարոզելու քրիստոնէական հաւատքը ։ Արդարեւ Առաքեալք հետեւեցան իրենց աստուածային Վարդապետին, եղան վկայ անոր գործոց եւ իւր տրուած պատուէրին համեմատ՝ գացին բոլոր աշխարհք, քարոզեցին, մկրտեցին եւայլն ։

Առաքելոց քարոզութեամբ քրիստոնէութիւնը տարածուեցաւ եւ հաւատացելոց թիւը բազմացաւ ։

Հայաստանեայց Ս. եկեղեցին հետեւելով Առաքելոց ընթացքին եւ օրինակին՝ սահմանած է որ քարոզք Բանին կենաց մարգարէական՝ առաքելական եւ աւետարանական ընթերցուածներէ յետոյ՝ բացատրեն ի լուր ժողովրդոց, որպէս զի Ս. Պատարագին մէջ ընթերցուած մարգարէական գրուածները, առաքելական թղթերն ու Աւետարանները հասկնան, ունկնդիր հաւատացեալք օգուտ քաղեն անոնցմէ եւ հոգեւորապէս մխիթարուին ։

Արդ՝ ինչպէս ճշմարիտ հաւատացեալ քրիստոնէի մը անհրաժեշտ է տէրունական օրերն երթալ եկեղեցի եւ ներկայ գտնուիլ փրկագործութեան խորհրդոյն Ս. Պա-

տարազին, նոյնպէս լսել քարոզ, որ կատարեալ աստուածպաշտութեան մի կարեւոր մասն է ։

Ցաւարտ մարգարէական եւ առաքելական գրոց՝ սարկաւագը կը ձայնէ «Ալէլուիա օրթի՛», որով կ'ազդարարէ ոտքի կենալ ի լուր Ս. Աւետարանի. որմէ վերջ կ'երգուի «Փառք քեզ Տէր Աստուած մեր», թէ՝ Աստուած արժանի ըրաւ զմեզ լսելու Ս. Աւետարանի պատգամները ։ Նաեւ կ'ըսուի Հաւատոյ Հանգանակը, որով մեր քրիստոնէական հաւատոյ ուղղափառ դաւանութիւնը կը յայտնեմք ։

Սարկաւագին քարոզէն եւ քահանային ի ծածուկ ըսած աղօթքէն յետոյ՝ ժամարարը կը կարդայ «Խաղաղութեամբ քով Քրիստոս Փրկիչ մեր» աղօթքը եւ ապա ժողովրդեան վրայ տեառնագրելով կ'ըսէ, «Տէր Աստուած օրհնեսցէ զամենեսեան» ։

Այս պահուն կը սկսի խորհրդաւոր Պատարագն, որով սարկաւագը կ'ազդարարէ, որ երախայք, „թերահաւատք եւ ապաշխարողք չմերձենան Ս. խորհրդոյն ։ (1) Պատարագիչն այն միջոցին կ'առնու ծառայի կերպարանք, զի սպասաւոր է ահաւոր Ս. խորհրդոյն Հաղորդութեան. եթէ Եպիսկոպոս է ժամարարն՝ կը հանէ թագն արտախուրակներով հանդերձ, եմիփորոնն եւ

---

(1) Հին ժամանակ երախայք, թերահաւատք եւ ապաշխարողք ըստ ազդարարութեան սարկաւագին՝ տաճարէն դուրս ելնելու պարտաւոր էին. ինչ ինչ պատճառներով այս արգելքը բարձուած է այժմ. Այսպէս ամեն անոնք՝ որոնք պատրաստուած չէին հաղորդուելու Ս. Խորհրդոյն, մինչ «Ողջոյն» տրուելու ժամանակ կը պարտէին տաճարին մէջ մնալ, եւ այնուհետեւ զաւիթը կենալու եւ աղօթելու.

հողաթափները, նոյնպէս եւ քահանային՝ սաղաւարտն ու հողաթափները։

Սրբասացութեան երգով կը լինի ընծային վերաբերումը, որ Քրիստոսի իւր կամաւորութեամբ ի Խաչ բարձրանալու եւ իմանալի Գողգոթայի վրայ պատարագուելու խորհուրդն ունի։ Ժողովուրդն ի ձեռն սարկաւագի ժամարարին կը մատուցանէ զընծայն, զոր առնելով ժամարարը կը հարցնէ, «Ո՞վ է սա Թագաւոր փառաց, Տէր զօրութեանց»։ Սարկաւագը կը պատասխանէ, «Սա՛ ինքն է Թագաւոր փառաց»։ Ուստի ժամարարն ընդունելով զընծայն կը դառնայ առ ժողովուրդն՝ եւ կ'ըսէ տեառնագրելով, «Օրհնեալ եկեալ անուամբ Տեառն»։ Պատարագիչը կը խնկարկէ զընծայն եւ կը լուայ իւր ձեռաց մատներն, իմացնելով որ՝ Ս. Խորհրդոյն մերձենալու համար ամենաթեթեւ մեղքերէ անգամ սրբուած ըլլալու է։

Նոյն ժամանակ սարկաւագն կը հրաւիրէ զժողովուրդն, որ խղճի մտօք, միամիտ սրտիւ, կատարեալ հաւատով, լի սիրով եւ ամեն բարի գործերով զարդարուած աղօթէ։

Պատարագիչն ծածուկ աղօթքին, որոյ իմաստն է աղաչել զԱստուած աւարտելու զընծայն ի խորհրդականութիւն Մարմնոյ եւ Արեան Տեառն, վերջաբանը կ'ըսէ, «Շնորհօք եւ մարդասիրութեամբ» եւ կ'օրհնէ զժողովուրդն։ Սարկաւագը կը համբուրէ սեղանն եւ զաջ ժամարարին, որ կ'ըսէ, «Ողջոյն տուք միմեանց ի համբոյր սրբութեան. Քրիստոս ի մէջ մեր յայտնեցաւ»։ Սարկաւագն՝ «Ողջոյն տուք միմեանց ի համբոյր սրբութեան» քարոզելով կ'իջնէ բեմէն, եւ կ'ա-

ւետէ մեր Փրկչին Ծնունդը ։ Սարկաւագը նոյն պահուն օրինակ է՝ ի Ծննդեան Քրիստոսի , հովուաց երեւցող եւ Տեառն մերոյ Ծնունդն աւետող հրեշտակին ։ Եկեղեցական դասը ժողովրդոց կ՚աւետէ Փրկչին Ծնունդը, եւ ժողովուրդը զիրար (1) ողջունելով կ՚ըսէ , «Քրիստոս ի մէջ մեր յայտնեցաւ» ։ Զնոյն դպիրք կ՚երգեն , որոյ յաւարտ սարկաւագը կը յիշեցնէ , թէ սրբագործութեան ժամանակը հասած է . ուստի ահիւ , երկիւղիւ եւ ջերմեռանդութեամբ կենանք . եւ ժողովուրդն ինքզինքն ամփոփելով կ՚ըսէ , «Առ քեզ Աստուած կը նայիմք» ։ Սարկաւագը կը ձայնէ , «Պատարագ Քրիստոս մատչի Գառն Աստուծոյ» կը յայտնէ թէ Աստուածորդին անարատ Գառն Աստուծոյ՝ մատչի նուէր Պատարագի . եւ ժողովուրդը կ՚աղաղակէ , որ Աստուծոյ ողորմութիւնն եւ խաղաղութիւնն հասնի առ մեզ եւ այս Պատարագի օրհնութիւնն սփռուի ի մեզ. Նաեւ ժամարարը կը հայցէ որ Հօր Աստուծոյ, Որդւոյն Միածնի և կենդանարար Ս. Հոգւոյն շնորհքը , սէրն եւ սրբարար զօրութիւնը լինի միշտ հաւատացելոց հետ , որպէս զի զօրանան շնորհօք , առատանան աստուածային սիրով եւ սրբուին մտօք ու սրտիւ ։ Ժողովուրդը կ՚ըսէ ժամարարին , այն շնորհքը , սէրն եւ սրբարար զօրութիւնը՝ զոր մաղթեցիր մեզ ամենուս համար, քու հոգհետ ալ ըլլայ իբրեւ պահապան ։ Սարկաւագն կը հրաւիրէ զհաւատացեալս , որ իրենց միտքը բարձրացնեն առ Աստուած . ժողովուրդը կը պատասխանէ , բացինք

(1) Հին ժամանակը սովորութիւն կար որ ժողովուրդը զիրար համբուրելով կ՚ըսէր , «Քրիստոս ի մէջ մեր յայտնեցաւ»։ Ինչ ինչ պատճառներով համբուրելու սովորութիւնը բարձուած եւ համբուրելու ձեւը միայն պահուած է եկեղեցւոյ մէջ։

մեր մտաց աչքերն առ քեզ նայելու, Տէ՛ր ամենակալ։ Սարկաւագը վերստին յորդոր կը կարդայ ըսելով, «Եւ գոհացարուք զՏեառնէ բոլորով սրտիւ», գոհանալ զԱստուծոյ, որ Քրիստոս կը մեռանի ծառայից համար. ուստի կ'ըսէ ժողովուրդը, «Արժան եւ իրաւ է գոհանալ զԱստուծոյ»։

Ժամարարը իւր ծածուկ աղօթքով կը գոհանայ Աստուծոյ անքաւ մարդասիրութենէն, որով Բանն յաւիտենական՝ յոր հրեշտակաց գունդը չէր համարձակեր նայելու, եւ անոր աստուածութեան անմատոյց լոյսէն երեսը կը ծածկէր, մարդացաւ մեզ համար եւ իրաւունք տուաւ մեզ հրեշտակաց երգակից լինելու, եւ մինչ հրեշտակք երկնից առաջի աթոռոյ Աստուածութեան կ'երգեն «Սո՛ւրբ, Սո՛ւրբ, Սուրբ, Տէ՛ր զօրութեանց», մեք եւս համախմբեալ Աստուծոյ տաճարին մէջ՝ հրեշտակաց հետ կը նուագենք, «Սո՛ւրբ, Սո՛ւրբ, Սուրբ Տէ՛ր զօրութեանց, լի են երկինք և երկիր փառօք քո, օրհնութիւն ի բարձունս, օրհնեալ որ եկիր եւ գալոց ես անուամբ Տեառն, ովսաննա՛ ի բարձունս»։ (1)

Ժամարարը կ'ընթեռնու ի ծածուկ մի աղօթք, որով կը յիշէ Աստուծոյ առ մարդկային ազգն ըրած բարերարութիւնը, Աստուծոյ՝ որ ի նախնումն զանազան ըստուերակերպ պատարագօք մխիթարեց անկեալ մարդկութիւնն, եւ ի վախճանի՝ կատարեց մարդոց փրկութիւնը, զենմամբ երկնաւոր Գառին, որ մեզ համար

[1] Այս երգն ոչ միայն հրեշտակաց երգն է, այլեւ մարդոց փառաբանութիւնը, յորմէ կ'իմացուի թէ ի ժամու Ս. Պատարագի՝ հրեշտակք յերկինս եւ մարդիկ յերկրի միաձայն սրբասացութեամբ կ'օրհնեն զԱստուած։

մարդանալով իւր պատուական Մարմնոյ եւ Արեան հաղորդ ընելու միջոց մը հաստատեց՝ սահմանադրելով Հաղորդութեան փրկարար խորհուրդը, եւ այս աղօթքին վերջը՝ պատարագիչը կ՚օրհնէ զնշխարն-հացն եւ կ՚ըսէ ի ձայն՝ «Առէ՛ք կերէք, այս է Մարմին իմ, որ վասն ձեր եւ բազմաց բաշխի ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց»։ Նոյնպէս օրհնելով բաժակը՝ կ՚ըսէ ի ձայն, «Արբէ՛ք ի սմանէ ամենեքեան, այս է Արիւն իմ Նորոյ-ուխտի, որ յաղագս ձեր եւ բազմաց հեղանի ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց»։

Մինչ դպիրք կ՚երգեն «Հայր երկնաւոր», ժամարարը յիշատակելով Քրիստոսի փրկագործ տնօրինութիւնները՝ կը բարձրացնէ զընծայն Հօր Աստուծոյ ըսելով, «Եւ զքոյս ի քոյոց քեզ մատուցանեմք ըստ ամենայնի և յաղագս ամենեցուն». որով ըսել կ՚ուզէ՝ «Հա՛յր երկնաւոր, քո է այս ընծայն, զոր դու տուիր մեզ քու պարգեւներէդ, եւ հաւատացեալք՝ զայս քեզ կը մատուցանեն ի գոհութիւն քո բարերարութեան»։ Դպիրք կ՚երգեն, «Ցամենայնի օրհնեալ ես». իսկ պատարագիչը կը պաղատի առ Հայրն երկնաւոր, որ իւր մեղքերն անտես առնելով՝ առաքէ իւր մշտնջենաւորակից և էակից Սուրբ Հոգին ի դասս քահանայից եւ սարկաւագաց, որոնք Ս. խորհրդոյն կատարման սպասաւորներն են, նաեւ յառաջադրեալ ընծայն, որպէս զի Հոգին Սուրբ ազատութիւն ընէ ի փոխարկել զհացն եւ զգինին ի Մարմին եւ յԱրիւն Տեառն մերոյ. ուստի, երբ դպիրք կ՚երգեն «Որդի Աստուծոյ», պատարագիչը՝ նախ զհացն եւ ապա զբաժակն ուրոյն ուրոյն երիցս տեառնագրելով կ՚օրհնէ. եւ ապա զհացն եւ զբաժակն

իմիասին կ'օրհնէ՝ աղաչելով որ հացն եւ գինին Հոգւով Սրբով փոխարկուին ի Մարմին եւ յԱրիւն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Այս օրհնութենէն յետոյ մեր եկեղեցին Հայաստանեայց սրբագործութիւնը կատարեալ կը համարի, եւ կը հաւատայ թէ՝ առաջադրեալ հացն ու գինին փոխարկուած են Հոգւով Սրբով իսկական Մարմնոյ եւ Արեան Տեառն, հետեւաբար կ'ըսէ ժամարարը, «Որպէս զի եղիցի Սա (Սրբութիւնը) ամենեցուն մեզ մերձեցելոցս՝ յանդատապարտութիւն, ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց» ։

Դպիրք կը սկսին երգել «Հոգի Աստուծոյ» եւ պատարագիչը պէս պէս խնդրուածքներ կը մատուցանէ կենդանի հաւատացելոց եւ ի Քրիստոս Յիսուս ննջեցելոց համար ։ Եւ որովհետեւ մեք հաւատացեալքս՝ որ կը կազմենք զգինուորեալ եկեղեցին, ունինք սերտ յարաբերութիւն յաղթական եկեղեցւոյ հետ, եւ ինչպէս կը հաւատանք որ ամեն սուրբեր սիրելի են Աստուծոյ եւ ամեն բարեպաշտ անձինք՝ որք քրիստոնէական հաւատով եւ բարի խոստովանութեամբ ի Տէր ննջած են, կը յիշեն զմեզ առաջի Աստուծոյ եւ մեզ համար կ'աղօթեն, նոյնպէս եւ մենք կը յիշենք զանոնք մեր աղօթից մէջ, որպէս զի անոնց բարեխօսութեամբ Աստուծոյ ողորմութիւնը հասնի առ մեզ. ուստի կ'ըսէ ժամարարը, «Ընդ որս եւ մեզ այց արասցես բարերար Աստուած, աղաչե՛մք ։ — Աստուածածնի Սրբուհւոյ Կուսին Մարիամու, Յովհաննու Մկրտչին, Ստեփաննոսի Նախավկային եւ ամենայն Սրբոց եղիցի յիշա-

տակ ի Ս. Պատարագս, աղաչե՛մք»: Դպիրք կ'երգեն «Յիշեա Տէր զնոսա եւ ողորմեա նոցա»:

Սարկաւագը յետ այսորիկ կը սկսի յիշատակել ամեն կարգի Սրբոց անուանքը, յիշելու համար անոնց առաքինութիւններն եւ Հօր Աստուծոյ նուիրելու, որպէս զի անոնց առաքինութիւնը լինի օրինակ հաւատացեալ ժողովրդեան:

Պատարագիչը կը պաղատի առ Տէր իւր ծածուկ աղօթքովն՝ որ իւր կաթողիկէ եւ առաքելական եկեղեցին՝ զոր հաստատեց իւր Միածին Որդւոյն պատուական արեամբ, օրհնէ եւ պահէ ի խաղաղութեան, նոյնպէս կը խնդրէ որ օրհնէ բոլոր ուղղափառ եպիսկոպոսները, որոնք ուղիղ վարդապետութեամբ՝ Ս. Աւետարանի յայտնած ճշմարտութիւնները կը քարոզեն եւ Ս. Աւետարանի ուղիղ բարոյականութիւնը կ'ուսուցանեն հաւատացելոց. եւ ի վերջոյ կը յիշէ Եպիսկոպոսապետին եւ ընդհանրական Հայրապետին (1) անունը, խնդրելով որ Տէրը երկար ժամանակ շնորհէ եկեղեցւոյ եւ ազգին, ուղիղ վարդապետութեամբ ի հոգեւոր հովուութիւն իւր բանաւոր հօտին: Եւ ի ծածուկ կ'աղօթէ կենդանի հաւատացելոց բարօրութեան համար, խնդրելով որ իւրաքանչիւրին պիտոյքը պարգեւէ, եւ յաւիտենական հանգիստ մաղթելով ի Քրիստոս ննջեցելոց համար: Սարկաւագը կ'ըսէ ի ձեւ քարոզի գոհաբանա-

---

(1) Խորհրդատետրին մէջ յիշատակուած է ընդհանրական Հայրապետին անունը միայն, ի վերջոյ սկսուած է վիճակաց Թեմական առաջնորդաց անուանքը: Եւ երբ Ս. Երուսաղեմի եւ Կոստանդնուպոլսոյ պատրիարքական աթոռները հաստատուեցան, պատշաճ դատուեր է որ Ս. Երուսաղեմի եւ Կ. Պոլսոյ Պատրիարքաց անուանքն եւս յիշատակուին ի Ս. Պատարագի:

կան եւ փառաբանական մաղթանքը, աղօթելով կենդանեաց եւ ի Քրիստոս ննջեցելոց համար, որոյ յաւարտ ժամարարը կը հայցէ Աստուծոյ ողորմութիւնը ամենուն համար ։ Սարկաւագն եղանակած քարոզովը կ'աղաչէ զՏէր, որ հաշտ եւ քաղցր կամօք ի հաճոյս իւր ընդունի մատուցուած Պատարագը, եւ հաճի ի փոխարէնն պարգեւել Հոգւոյն Սրբոյ շնորհքն ու պարգեւները ։

Ժամարարը կարդալով ի ծածուկ այն աղօթքը, թէ նախախնամողն տիեզերաց, նահապետաց եւ մարգարէից կոչուեցաւ «Աստուած», իսկ անկեալ մարդկութեանս «Հայր» անուանիլ հաճեցաւ, եւ համարձակութիւն կը խնդրէ աղօթելու առ Հայրն երկնաւոր ։ Այն պահուն ամենքս բազկատարած հայցմամբ կ'երգեմք միաբերան Տէրունական աղօթքը՝ »Հայր մեր որ յերկինս», որոյ վերջաբանը ժամարարն ըսելով կու տայ խաղաղութիւն եւ կ'աղաչէ զՀոգին Սուրբ, որ ողորմի ներկայ ժողովրդեան, որ խոնարհած՝ հոգւով եւ ճըշմարտութեամբ կերկրպագէ առաջի Աստուածութեան ։ Սարկաւագը կը ձայնէ, Պռօսխումէ՛, որով ժողովուրդը կը հրաւիրէ ի վեր նայելու ։ Ժամարարն այն ժամանակ նախ կը բարձրացնէ փրկական Մարմինը, եւ ապա Ս. Մարմինն ու Արիւնը պարունակող Ս. Սկիհն ի տես ժողովրդեան՝ ըսելով, «Ի Սրբութիւն Սրբոց»· այսինքն սա՛ է Սրբութիւնը, զոր կրնան ճաշակել անոնք միայն, որոնք մաքրած են իրենց սիրտն ու խիղճը կատարեալ զղջմամբ, խոստովանութեամբ եւ ապաշխարութեամբ, այսինքն՝ աղօթիւք, պահովք, ողորմութեամբ եւ վըճարմամբ ։

Պատարագիչն ապա կը գոհանայ զԱստուծոյ ըսելով, «Օրհնեալ Հայր Սուրբ Աստուած ճշմարիտ», այսինքն՝ Օրհնեալ ես Հա՛յր Աստուած, որ հաճութեամբ ընկալար այս մատուցուած Պատարագը։

«Օրհնեալ Որդիդ Սուրբ Աստուած ճշմարիտ», այսինքն՝ Օրհնեալ ես Որդի՛դ Աստուած, որ մեզ համար պատարագեցար։

«Օրհնեալ Հոգիդ Սուրբ Աստուած ճշմարիտ», այսինքն՝ Օրհնեալ ես Հոգի՛դ Սուրբ Աստուած, որ քո իջմամբ սրբագործեցիր ընծայուած հացն ու գինին։

Երբ դպիրք կ'երգեն «Ամէն, Հայր Սուրբ, Որդիդ Սուրբ, Հոգիդ Սուրբ», պատարագիչը կը մատուցանէ իւր աղօթքն առ Յիսուս Քրիստոս, որ ընդ Հօր Աստուծոյ կը նստի իւր սրբութեան աթոռն, եւ աստ սեղանին վրայ կը պատարագի, խնդրելով որ արժանի ընէ զմեզ (եկեղեցական դասը) հաղորդուելու Ս. մարմնոյ եւ արեան Տեառն, եւ մեր միջոցաւ մասնակցելու հաւատացեալ ժողովուրդը։ Կ'աղօթէ նաեւ աղաչելով զՏէր, որ արժանի լինի ընդունելու մեղսաքաւիչ Ս. խորհուրդն ի թողութիւն մեղաց։ Ապա կ'ըսէ, «Ի Սուրբ, ի Սուրբ պատուական Մարմնոյ եւ յԱրենէ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ճաշակեսցուք սրբութեամբ, որ իջեալ յերկնից բաշխի ի միջի մերում, (դառնալով առ ժողովուրդն՝ Ս. սկիհն ի ձեռին), սա՛ է (Մարմին եւ Արիւն Յիսուսի Քրիստոսի) կեանք հոգւոց, յոյս եւ յարութիւն հաւատացելոց, քաւութիւն եւ թողութիւն մեղաց. Սաղմոս ասացէ՛ք Տեառն Աստուծոյ մերում, Սաղմոս ասացէ՛ք երկնաւոր Թագաւորիս մերում անմահի՝ որ նստի ի կառս քերովբէական»։

*Անկէց վերջը դպիրք կ'եղանակեն «Տէ՛ր, ողորմեա՛»:* (1)

*Պատարագիչը Ս. Մարմնոյ մի մասն ի ձեռին ունելով կ'աղօթէ ի ծածուկ առ Հայր եւ Որդի. վերջը կ'ընթեռնու Յովհան Ոսկեբերանի աղօթքը, եւ իւր անձին՝ ժողովրդեան եւ համայն աշխարհի համար պէս պէս խնդրուածքներ մատուցանելով՝ թողութիւն կը հայցէ թէ՛ իւր եւ թէ՛ իւր թշնամեաց եւ ատելեաց համար, եւ հաւատով ու երկիւղածութեամբ կը ճաշակէ նախ սուրբ Մարմինն, եւ ապա սուրբ Արիւնն՝ ըսելով, «Մարմին քո անապական լիցի ինձ ի կեանս եւ սուրբ Արիւն քո ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց»։ «Տէ՛ր, ողորմեա՛» երգն երբ կ'աւարտի, սարկաւագը կը հրաւիրէ դպիրները Սաղմոս երգելու։ հետեւաբար դպիրք կ'եղանակեն՝ «Քրիստոս պատարագեալ բաշխի ի միջի մերում...»։ Յաւարտ Սաղմոսի՝ եթէ պատարագիչը չէ աւարտած իւր աղօթքը, դպիրք կ'երգեն «Տաղ», ըստ պատշաճի աւուրն. յետոյ սարկաւագը կը հրաւիրէ զժողովուրդն, երկիւղիւ եւ հաւատով մերձենալու եւ սրբութեամբ հաղորդուելու ի սուրբ Մարմնոյ եւ յԱրենէ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ Ժամարարը յետ հաղորդելոյ հոգեւոր եւ մարմնաւոր պատրաստութեամբ մատչող արժանաւոր ժողովուրդը՝ կ'օրհնէ Ս. Սկիհով եւ կ'ըսէ, «Կեցո՛, Տէր, զժողովուրդս*

---

(1) Թէեւ պատարագամատոյց գրեանց մէջ այս պահուն «Տէ՛ր, ողորմեա՛» երգելու հրահանգ չկայ, սակայն համաճարակ հիւանդութեանց տիրած ժամանակ՝ առ Տէր աղաղակելու եւ անոր ողորմութիւնը հայցելու նպատակաւ՝ «Տէ՛ր, ողորմեա՛» երգուեր է, եւ սովորութիւն եղեր է, որ կը շարունակուի ցարդ։

քո, եւ օրհնեա՛ զժառանգութիւնս քո, հովուեա եւ բարձրացո զսոսա յայսմ հետէ մինչեւ յաւիտեան»։

Կ'աւարտի այժմ Ս. Պատարագի խորհրդաւոր արարողութիւնը, ուստի թէ՛ ժամարարը կ'ընթեռնու գոհաբանութեան աղօթքները եւ թէ՛ ժողովուրդը «Լցաք ի բարութեանց քոց Տ'էր» եւ «Գոհանամք զքէն» գոհացողական երգերով փառք եւ գոհութիւն կը մատուցանէ Աստուծոյ՝ Ս. Պատարագի շնորհքն ու օրհնութիւնը վայելելուն համար։

Պատարագիչը վերստին կ'առնու տիրական կերպարանքն եւ կ'ըսէ սա հանդիսաւոր աղօթքը, «Որ օրհնես զայնոսիկ՝ ոյք օրհնեն զքեզ Տէ՛ր...». եւ կ'իջնէ բեմէն՝ ի խորհուրդ վերջին գալստեան Փրկչին, կամ՝ ըստ այլոց, ի խորհուրդ կրկին երեւման Քրիստոսի հաւատացելոց՝ յետ յարութեան. եւ ի վերջոյ կ'ըսէ, «Կատարումն օրինաց եւ մարգարէից, դու ես, Քրիստոս Աստուած Փրկիչ մեր, որ լցեր զամենայն հայրական տնօրէնութիւնս քո, լի՛ց եւ զմեզ Հոգւովդ քով Սրբով». որով կ'իմացնէ մեզ, թէ Յիսուս Քրիստոս կատարեց հայրակամ բոլոր տնօրինութիւններն, եւ յետ իւր Համբարձման՝ լցոյց Առաքեալները Հոգւով Սրբով. ուստի պատարագիչը կը պաղատի ըսելով, «Լի՛ց եւ զմեզ շնորհօք Հոգւոյն Սրբոյ»։

Կ'ընթեռնու պատարագիչը Յովհաննու Աւետարանի առաջին գլխոյն սկիզբէն՝ «Ի Հօրէ լուսոյ», մինչ ցհամար տասնեւչորս, «Եւ Բանն մարմին եղեւ եւ բնակեցաւ ի մեզ»։ Ապա՝ «Պահպանիչ» աղօթքով կ'օրհնէ զժողովուրդն, եւ «Օրհնեա՛լ եղերուք ի շնորհաց Հոգւոյն Սրբոյ» ըսելով եւ տեառնագրելով կ'արձակէ զժողովուրդն։

Պէտք է որ՝ գոնէ խորհրդաւոր Պատարագին սկիզբէն ցվերջ «Օրհնեալ եղերուք»ի՝ ներկայ գտնուինք Ս. եկեղեցւոյ մէջ, որպէս զի Ս. Պատարագի երկնաբեր շնորհքն ու օրհնութիւնները վայելենք, եւ ի ձեռն ժամարարի եղած Ս. Աւետարանն համբուրելով մեկնինք եկեղեցիէն ։



# ՄԱՍՆ ՉՈՐՐՈՐԴ

## ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԱՐԱՐՈՂՈՒԹԻՒՆՔ

Բացի խորհրդաւոր արարողութեանց, որոնք կը վերաբերին եկեղեցւոյ փրկարար Ս. խորհրդոց, կը կատարուին նաեւ ուրիշ կարգ մը արարողութիւնք, քրիստոնէական կրօնի իբրեւ արտաքին ծէսեր, որոնք կ'ըլլան ընթերցմամբ Ս. Գրոց, օրհնութեամբք, աղօթիւք եւ հոգեւոր երգովք ։

Եկեղեցական արարողութիւնք կ'ըսուին առհասարակ՝

Ա. Օրհնութիւն Ս. Միւռոնի

Բ. Օծումն Նորակառոյց Եկեղեցւոյ,

Գ. Նաւակատիք Եկեղեցւոյ,

Դ. Օծումն Նորագործ Խաչի եւ Նորանկար Պատկերի,

Ե. Օրհնութիւն Եկեղեցական Անօթոց եւ Զգեստուց,

Զ. Ուխտօրէք եւ Թառասունք՝ Նորածին Մանկանց,

Է. Խաչալուայ,

Ը. Տնօրհնէք,

Թ. Աղօրհնէք,
Ժ. Յուղարկաւորութիւն ննջեցելոց,
ԺԱ. Յիշատակ մեռելոց։

Ա. Օրհնութիւն Ս. Միւռոնի. — *Ս. Միւռոնի օրհնութիւնը կը կատարէ ամենայն Հայոց Հայրապետն՝ ըստ ծիսարանի Հայաստանեայց առաքելական Սուրբ եկեղեցւոյ, համանակարգ աղօթիւք, օրհնութեամբք եւ հոգեւոր երգօք։ Ս. Միւռոնը կ'ըսուի նաեւ Իւղ-անոյշ, որով կը կատարուին եկեղեցական ամեն օծութիւնք։*

Բ. Օծումն Նորակառոյց Եկեղեցւոյ. — *Նորակառոյց եկեղեցին՝ ըստ որում հասարակաց աստուածպաշտութեան աղօթավայրը պիտի լինի, եւ անդ պիտի կատարուին սրբարար խորհուրդք եւ եկեղեցական արարողութիւնք, նոյնպէս եւ աւազանն՝ յորում երեխայք պիտի մկրտուին յանուն ամենասուրբ Երրորդութեան, օրհնութեամբ եւ օծմամբ Ս. Միւռոնի կը նուիրագործուի։ Ուստի տաճարին չորս կողմը ղետեղուած Խաչքարինք, Սեղանն ու Վէմը, նաեւ Աւազանը՝ նախ կը լուացուին ջրով եւ գինւով, որոնք Քրիստոսի կողէն բղխած ջրոյ եւ արեան նշանակ են, եւ ապա կ'օծուին Ս. Միւռոնաւ։*

Նաւակատիք Եկեղեցւոյ. — *Սողոմոն՝ յանուն Եհովայի շինել տուաւ շքեղ եւ հոյակապ մի տաճար, որ երբ աւարտեցաւ, եօթն օր Նաւակատիք ըրաւ զոհերով եւ ողջակէզներով։*

*Նոր-Ուխտի՝ քրիստոնէական եկեղեցւոյ հաստատութեան ժամանակ՝ սահմանուեցաւ յետ օծման ութ օր շարունակ կատարել Նաւակատիք նորաշէն տաճա-*

րին մէջ, մատուցմամբ անարիւն զոհի Ս. Պատարագի։

**Գ. Օծումն Նորագործ Խաչի եւ Նորանկար Պատկերի. —** *Մովսէս Աստուծոյ հրամանաւ իւղով օծեց տաճարին խորանն եւ բոլոր սպասներն, իմացնելու համար՝ թէ անոնք նուիրուած են ի սպաս տանն Աստուծոյ։*

*Քրիստոնէական եկեղեցին նուիրական կ'ընդունի այն ամէն անօթներն եւ սպասներն, որոնք եկեղեցւոյ մէջ գործածելի են. ուստի թէ՛ Նորագործ Խաչն եւ թէ՛ Նորանկար Պատկերը նախ ջրով եւ գինեաւ կը սրբուի եւ ապա Ս. Միւռոնաւ կ'օծուի, որպէս զի Հոգին Սուրբ իւր աներեւոյթ զօրութեամբ տայ շնորհ ա՛յն Խաչին, որոյ առջեւ կ'երկրպագեմք՝ անոր մէջ աներեւութաբար բնակող Տեառն մերոյ Աստուծոյ, եւ Պատկերին տայ ա՛յն շնորհքը, զոր ունէր այն Սուրբն, որոյ անուամբ նկարուած է Պատկերն։*

**Դ. Օրհնութիւն Եկեղեցական Անօթոց եւ Զգեստուց. —** *Եկեղեցական Անօթք եւ Զգեստք եւ Մատեանք՝ ըստ ծիսարանի կ'օրհնուին կանոնադրեալ աղօթիւք, որպէս զի անոնց նիւթերը սրբուելով ի ձեռն օրհնութեան՝ նուիրական լինին, եւ եկեղեցական պաշտօնեայք՝ նոյն նուիրական անօթովք, զգեստուք եւ մատենիւք կատարեն թէ՛ փրկարար խորհուրդներն եւ թէ՛ եկեղեցական արարողութիւններն։*

**Ե. Ութօրէք եւ Քառասունք Նորածին Մանկանց. —** *Քահանայն երախային մկրտութեան ութերորդ օրը նորածնի մանկան նարօտը կ'առնու գլխէն, կը լուայ զանի եւ կը կարդայ հրամանակարգ աղօթքը, այս արարողութիւնը կ'ըսուի «Միւռոնէն հանել». իսկ քա-*

ռասուն օրէն յետոյ մանկան մայրը պարտաւոր է տանիլ նորածինք մանուկն յեկեղեցի, ինչպէս Հին-Ուխտի ժամանակ՝ Իսրայէլացւոց արու անդրանիկ մանկունք կը տարուէին ի տաճար՝ ընծայուելու համար Աստուծոյ. եւ այս օրէնքը կատարուելու նպատակաւ էր որ Քրիստոս մանկացուաց պէս տարուեցաւ տաճարը, հնազանդելով սահմանեալ օրինաց։

Քահանայն եկեղեցւոյ մէջ քառասնօրեայ մանկան վրայ կը կատարէ այս արարողութիւնը։ (1)

Զ. Խաչալուայ. — Խաչալուայն՝ որ եւ կ՚ըսուի «Խաչահանգիստ», կը յիշեցնէ մեզ այն հրեշտակն, որ իջնելով Պրոպատիկէ աւազանը՝ կը յուզէր ջուրը, եւ անդ գտնուած հիւանդներն որոնք որ առաջին անգամ ջուրը նետուէին, կը բժշկուէին իրենց հիւանդութենէն։

Քրիստոնէական եկեղեցւոյ մէջ Խաչալուայի արարողութիւնը (2) կը կատարուի Ս. Խաչիւ՝ Ս. Աւետարանաւ եւ Սրբոց Մասամբք։ Քահանայն երիցս ընկղմելով զՍ. Խաչն ի ջուր՝ կ՚օրհնէ ըսելով, «Օրհնեցի եւ սրբեցի ջուրս այս», եւ հիւանդութեան բժշկութիւն կը մաղթէ ի Տեառնէ։

Է. Տնօրհնէք. — Տնօրհնէքի արարողութիւնն ըսկըսուած է առաքելական դարէն, յորում Առաքեալք

---

(1) Վերջին ժամանակներս գրեթէ դադրած է մայրաքաղաքիս մէջ՝ նորածին մանկանց ութօրէից եւ քառասնից արարողութեանց կատարումը։

(2) Վերջին ժամանակներս՝ կանոնական արարողութեանց կարգն անցած է խաչալուայի արարողութիւնը, այնպէս որ՝ մայրաքաղաքիս եկեղեցեաց շատին մէջ, շաբաթը մի անգամ ուրոշեալ օր մը՝ յետ առաւօտեան ժամերգութեան կը կատարուի խաչալուայի արարողութիւնը։

*եւ անոնց յաջորդք շրջելով հաւատացելոց տուները՝ կ'աւետէին Քրիստոսի Ս. Ծնունդը եւ Ս. Յարութիւնը։*

*Տաներէց քահանայք կ'օրհնեն իրենց հոգեւոր հովուութեան յանձնուած ժողովրդոց տուները, Ս. Ծնընդեան Տօնին՝ օրհնելով բնական ջուրն, որ Քրիստոսի մկրտութեան խորհրդաւոր նշանակութիւնն ունի, ինչպէս կը հասկցուի քահանային կարդացած Աւետարանէն. իսկ Զատկին օրհնելով գինին, որ նշանակ է արեան Քրիստոսի։*

*Թէ՛ մայրաքաղաքիս մէջ եւ թէ՛ հայաբնակ գաւառները, քահանային՝ ո՛չ միայն ջուրը կամ գինին, այլ եւ Զատկի կարմիր հաւկիթը* [1] *, մաս մը աղ, ցորեն կամ ալիւր եւ կամ հաց կ'օրհնէ, որպէս զի հաւատացեալ քրիստոնէին տունը շէն ու առատ մնայ միշտ։*

Ը. Աղօրհնէք. — *Քահանային ըստ ծիսարանի կօրհնէ՝ մատաղցու կենդանիին կերցուելու աղը։*

*Սովորութիւն եղած է տարւոյն երեւելի տօներուն մատաղ ընելու, եւ իբրեւ ողորմութիւն՝ ննջեցելոց հոգւոց համար կարօտ ընտանեաց բաշխելու եւ զանոնք կերակրելու։*

Թ. Յուղարկաւորութիւն Ննջեցելոց. — *Իսրայէլեան եկեղեցւոյ ժամանակ սովորութիւն կար ննջեցելոց համար աղօթք մատուցանել առ Աստուած։*

*Քրիստոնէական եկեղեցւոյ հաստատութեան ժամանակէն սկսուած է ննջեցելոց հանդիսական յուղարկա-*

---

(1) Զատկի կարմիր հաւկիթին համար զանազան բացատրութիւնք տրուած կան, բայց ամենէն աւելի հաւանական է համարիլ զայն՝ նշանակ եկեղեցւոյ, զոր իբրեւ հաւ երկնից՝ ծնաւ Քրիստոս ի Խաչի, եւ կարմիր ներկեց՝ զայն ի գոյն իւր պատուական Արեան, զոր Թափեց ի Գողգոթա՝ ի Սեղան Խաչին։

*ւորութիւն եւ թաղում կատարել, աղօթելով անոնց հոգւոց համար առ Տէր, որ թողութիւն շնորհէ անոնց մարդկային տկարութեան հետեւանօք գործած թեթեւ մեղաց եւ յանցանաց։*

*Ցուղարկաւորութեան եւ թաղման արարողութիւնը բաժնուած է երեք դասակարգի, օծեալ եկեղեցական պաշտօնէից, հասարակաւոր աշխարհականաց եւ տղայոց։*

*Օծեալ եկեղեցական պաշտօնէից (քահանայից, եպիսկոպոսաց եւ կաթողիկոսաց) նախ մարմինը կը լըւացուի բնական ջրով՝ քահանայաթաղի համար սահմանուած աղօթիւք եւ երգովք. սպիտակ կտաւով կը պատնուի, եւ սպիտակ կտաւով պատրաստուած ժամարարի զգեստուք կ'զգեստաւորուի, մոմ կը վառուի գլխուն վերեւ եւ ոտից ներքեւ, կը լինի սաղմոսերգութիւն, ընթերցումն չորս Աւետարանաց լրիւն, կը ծխուի խունկ, երեսը կ'ուղղուի դէպ յարեւելս, հանգուցելոյն եկեղեցական աստիճանին համեմատ ըզգեստաւորում, Ս. Աւետարան՝ կուրծքին վրայ։ Հանգուցելոյ մարմինը կը տարուի եկեղեցական թափորով (1) յեկեղեցի, ուր նորա հոգւոյն համար մատուցուած յատուկ Պատարագի Ողջունի ժամանակ՝ հանգուցելոյն ճակատն եւ աջ ձեռքը միայն կ'օծուի Ս. Միւռոնաւ եւ եկեղեցական թափորով կը տարուի գերեզմանատունն՝ ամփոփուելու համար ի հող։*

*Յետ թաղման՝ եկեղեցական հոգեւոր պաշտօնէից համար կը կատարուին գերեզմանին վրայ այգ, եօթն-*

---

(1) Ցուղարկաւորութեան ժամանակ՝ օծեալ եկեղեցական պաշտօնէին դագաղը թափորին մէջ կ'առնուի, իսկ աշխարհականին դագաղը՝ թափորին ետեւէն։

*օրէք, քառամնից եւ տարեկից ըստւած արարողութիւնք, մաղթելու ի Տեառնէ յաւիտենական հանգիստ՝ վասն հոգւոյ ի Տէր հանգուցելոյն ։*

*Այգ, եօթնօրէք, քառամնից եւ տարեկից ըստւածներն հոգեհանգստեան պաշտամունք են, որոնք վասն յիշատակի ի Քրիստոս ննջեցելոց կը կատարուին՝ թէ՛ եկեղեցւոյ եւ թէ՛ գերեզմանատան մէջ։*

*Հասակաւոր աշխարհականի եւ տղայի մահուանէն անմիջապէս յետոյ՝ ննջեցելոյն մարմինը լուալու սովորութիւն եղած է առողջապահական զգուշութեան տեսակէտով, մարմինը կը պատնուի սպիտակ կտաւով, մոմ կը վառուի, խունկ կը ծխուի, երեսը դէպ յարեւելս կը դարձուի, եւ ըստ հրահանգաց ծիսարանի՝ յուղարկաւորութեան եւ թաղման արարողութիւնը կը կատարուի ։*

Ժ. Ցիշատակ Մեռելոց. — *Հայաստանեայց Ս. եկեղեցին բարեպատակ խորհրդով սահմանած է՝ տարւոյն հինգ տաղաւարի երկրորդ օրն, ինչպէս նաեւ Ցիշատակ մեռելոց ըստւած օրերը, հոգեհանգստեան հանդիսաւոր պաշտօն կատարել՝ ի Քրիստոս Ցիսուս ընդհանուր ննջեցելոց հոգւոց համար, եւ հայցելով Աստուծոյ թողութիւնն անոնց ներելի մեղաց եւ յանցանաց համար՝ մաղթել յաւիտենական հանգիստ ։*

*Մեր բարեպաշտ նախնիք* (1) *իրենց պարտաւորութիւն կը համարէին Մեռելոցի օրերն երթալ գերեզմանատուն եւ օրհնել տալ իրենց նախնեաց դամբարանը ։*



(1) *Մայրաքաղաքիս մէջ սոյն օրինակ պարտաւորութիւնք սկսած են նուազիլ հետզհետէ ։*

# ՄԱՍՆ ՀԻՆԳԵՐՈՐԴ

## ԲԱՐԵՊԱՇՏԱԿԱՆ ԱՒԱՆԴՈՒԹԻՒՆՔ

Բարեպաշտական աւանդութիւնք կ'ըսուին ի մեր նախնեաց մեզ աւանդուած այն ամեն սովորութիւնք, որոնք հաւատացելոց կատարեալ աստուածպաշտութեան հանդիսական ծէսերն եւ ջերմեռանդութեան յայտարար նշաններն են. եւ թէպէտ քրիստոնէական հաւատոյ հիմնական սկզբանց նման անփոփոխելի չեն, սակայն եւ այնպէս՝ ի նախնի ժամանակաց սահմանուած եւ ընդունուած ըլլալով, եկեղեցին հաւատացելոց ջերմեռանդութիւնն եւ բարեպաշտական զգացմունքը վառ պահելու համար՝ անփոփոխ պահպանած է զայնս ցայսօր ժամանակի, ինչպէս են Նշխար կամ Մաս, Ժամուց, Գանձանակ կամ Պնակ, Նաւակատեաց Սեղան, Մոմավառութիւն եւ Ուխտագնացութիւն:

Նշխար կամ Մաս. — Նշխար կամ Մաս է իբրեւ ոչ-սրբագործեալ մնացորդ Սեղանոյն Ս. Պատարագի, որ սահմանուած է անո՛նց համար միայն, որոնք Քրիստոսի Մարմնոյ եւ Արեան հաղորդուելու պատրաստութիւն չունենալնուն՝ կ'ընդունին զկնի Ս. Պատարագի Նշխար կամ Մաս, որպէս զի Ս. Պատարագի ներկայ գտնուելով հանդերձ՝ չմնան առանց հոգեւոր մխիթարութեան, մասամբ հաղորդ լինելով Սեղանին:

Ժամուց. — Ժամուցն է կամաւոր նուէր մը, զոր ժողովուրդը բարեպաշտական զգացմամբ կու տայ օրուան ժամարարին, խնդրելով որ՝ ի մասնաւորի յիշէ

*Ս. Պատարագին մէջ թէ՛ զինքն եւ թէ՛ իւր ի Քրիստոս ննջեցեալները ։*

**Գանձանակ կամ Պնակ.** — *Իսրայէլեան տաճարաց մէջ կար գանձանակ մը, ուր Իսրայէլացիք կը ձգէին իրենց դրամական նուէրն, ի պէտս ծախուց տաճարին եւ ի նպաստ ողորմութեան կարօտելոց ։*

*Առաքեալք յետ աղօթից, ինչպէս նաեւ հաւատացեալք կը հանգանակէին դրամ վերոյիշեալ նպատակաւ. ուրեմն Գանձանակի սահմանումն առաքելական դարէն սկսուած է, եւ ցարդ պահուած է եկեղեցւոյ մէջ Գանձանակի շրջաբերումը ։*

*Քահանայն կը շրջաբերէ Գանձանակը՝ ընդունելու համար ժողովրդոց կամաւոր նուէրները ։*

*Նոյնպէս ժողովրդոց մէջ կը շրջաբերուի Պնակ, որոյ հասոյթով կը հոգացուին եկեղեցւոյ խունկը, մոմը, ձէթն եւ այլ կարեւոր պէտքերը. կը խնամուին աղքատ հիւանդներ, տնակներ, որբեր եւ այրիներ, եւ կը յանձանձուին մարդասիրական հաստատութեանց պէտոյքը ։*

**Նաւակատեաց Սեղան.** — *Առաքելոց ժամանակ սովորութիւն կար, որ ննջեցելոց պարագայք յատուկ սեղան կը պատրաստէին եկեղեցին, ուր հաւատացելոց բազմութիւնն ի միասին կը ճաշէր ։*

*Այս սովորութիւն դադրած է այժմ ։*

**Մոմավառութիւն.** — *Քրիստոնէական եկեղեցւոյ հաստատութեան առաջին դարուց մէջ՝ քրիստոնէութեան դէմ յարուցուած հալածանաց ժամանակ՝ անհարելի էր յայտնապէս կատարել կրօնական պաշտամունք, հետեւաբար հասարակաց աստուածպաշտութիւնն առ ահի կը կատարուէր ստորերկրեայ տեղուանք, ուր մը-*

*Թութեան պատճառաւ ճրագ կը վառուէր՝ լոյս տալու համար ։*

*Երբ քրիստոնեայք ազատօրէն սկսան պաշտել զԱստուած եւ աներկիւղ կատարել ամէն եկեղեցական պաշտամունք, եկեղեցին իբրեւ յիշատակ պահեց ճրագի գործածութիւնն. որ մինչ ցայսօր ժամանակի կը շարունակուի քրիստոնեայ եկեղեցեաց մէջ։*

Ուխտագնացութիւն. — *Ուխտագնացութիւնն սկսուած է՝ երբ հաւատացեալք ի յարգանս Սրբոց ձեռնարկած են շինել վկայարաններ անոնց շիրմաց վրայ ։ Քրիստոնեայք հետզհետէ փափաք զգացին երթալ յուխտ եւ տեսնել այս կամ այն տնօրինական տեղերն, որոնք Աստուածորդւոյն երկրաւոր կենօք եւ փրկագործ տնօրինութեամբք նուիրական եղած են, եւ կամ ա՛յն տեղերն, ուր Աստուծոյ սիրելի եւ հաճելի անձնաւորութիւնք՝ քրիստոնէական կրօնքին համար իրենց կեանքը զոհած եւ մարտիրոսական պսակի արժանացած են ։ Ուստի ուխտաւորք խանդավառ զգացմամբ կ'երթան այս կամ այն ուխտատեղին եւ անդ ամենայն ջերմեռանդութեամբ կ'աղօթեն առ Աստուած՝ ի կատարումն իրենց բարի հայցուածոց ։*

*Այս բարեպաշտական աւանդութիւններէ զատ՝ կան նաեւ Հայ. եկեղեցական ծէսեր, ինչպէս են՝ հրավառութիւն Տեառնընդառաջի, արմաւենւոյ եւ ձիթենւոյ ոստեր բաժնել, ջուր սրսկել եւ աղաւնի թռցնել, Ոտնալուայի ժամանակ՝ ոտքն իւղով օծել, խաղող օրհնել ։*

Հրավառութիւն Տեառնընդառաջի. — *Հեթանոսական սովորութիւն էր Մեհեկան ամսոյ մէջ ՝ի պատիւ աստե-*

*գական՝ հրապարակի վրայ դիզել փայտ ու ցախ, զորս նորափեսայք կը վառէին եւ հեթանոսք կրակին բոլորտիքը շրջելով կ'երգէին ։*

*Իմանալի արեգակն արդարութեան Քրիստոս ծնաւ եւ հեթանոսաց լոյս ծագեց ։ Քրիստոնէական եկեղեցին՝ Մեհեկան — Փետրուար 13 ին՝ որ է Քրիստոսի Տեառն մերոյ ի տաճարն Քառասնօրեայ Ընծայման տօնի նախընթաց օրն, ի պատիւ իմանալի արեգական Քրիստոսի՝ երեկոյեան նախատօնակէն յետոյ տաճարին բակը փայտ կը վառուէր, որ վերջերս անոր տեղ մի մեծ կերոն կը դրուի եկեղեցւոյ մեծ ատեանը, որ կը վառուի, երբ «Քրիստոս փառաց Թագաւոր» երգն սկսի ։*

**Արմաւենւոյ կամ Ձիթենւոյ ոստեր բաժնել**․ — *Հին ժամանակը սովորութիւն կար՝ Արմաւենւոյ կամ Ձիթենւոյ ոստեր ի ձեռին օղին մէջ չարժելու կամ գետինը տարածելու ։ Իսրայէլացիք Արմաւենւոյ ոստեր ճանբուն վրայ տարածեցին, երբ Սիօնի Թագաւորը Յիսուս Քրիստոս՝ յաղթական փառօք մտաւ յԵրուսաղէմ ի կամաւոր չարչարանս եւ ի խաչ․*

*Հայաստանեայց եկեղեցւոյ ուսուցանող եւ ուսանող դասը Ծաղկազարդի օրն՝ ի պատիւ եւ ի յիշատակ Աստուածորդւոյն Գալստեան ի քաղաքն Երուսաղէմ, Արմաւենւոյ կամ ձիթենւոյ ոստեր ի ձեռին կեցած Աստուծոյ տաճարին մէջ՝ միաբարբառ կ'աղաղակէ, «Ովսաննա՛» ։*

**Ջուր սրսկել կամ Աղաւնի թռցնել**․ — *Անյիշատակ ժամանակէ Հայոց սովորութիւն եղած է Վարդավառի տօնի օրը իրարու վրայ ջուր սրսկելու եւ աղաւնի թռցնելու՝ իբրեւ յիշատակ Ջրհեղեղի եւ Նոյին Տապանէն դուրս Աղաւնի թռցնելուն ։*

*Վարդավառի տօնը կը կատարուէր Նաւասարդի ամսուն առաջին օրը, որ Աստղիկ դիցուհւոյն յատկացուած տօն մ'էր, որուն հետ խառնուած էր Ջրհեղեղի յիշատակը՝ որ դեռ պահուած է Հայաստանեայց եկեղեցւոյ մէջ։ Եւ ըստ որում Դիցուհւոյն մեհեանը վարդերով եւ ծաղիկներով կը զարդարուէր, ուստի Վարդավառ անունը տրուած է նոյն տօնին։*

*Ս. Գրիգոր Լուսաւորիչ հայրն մեր սահմանեց Վարդավառի տօնին կատարել Քրիստոսի Պայծառակերպութեան տօնը։*

**Ոտնլուայի ժամանակ ոտքն իւղով օծել.** — *Հին ժամանակը սովորութիւն կար հիւրին ոտքերը լուանալ, որ սիրոյ եւ խոնարհութեան նշանակ էր։ Իսկ յետ լուացման իւղով օծելն՝ սիրոյ եւ ապաշխարութեան նշան. ինչպէս մեղաւոր կինն իւր արտասուօք լուաց Քրիստոսի ոտքերը, սրբեց մազերովն եւ օծեց ազնիւ իւղով։*

*Ոտնալուայի յիշատակի օրը կը գործածուի աղօթիւք եւ տեառնագրութեամբ՝ օրհնուած իւղը, յօրինակ խոնարհութեան եւ սիրոյ, զոր երկնաւոր Վարդապետն մեր՝ իւր անձին օրինակաւ ցուցուց։*

**Խաղող օրհնել.** — *Մեր բարեպաշտ նախնիք իրենց այգւոյն խաղողոյ բերքէն իբրեւ երախայրիք կը նուիրէին եկեղեցւոյ՝ ի պատրաստութիւն բաժակի գինւոյ։ Եկեղեցին յայնժամ սահմանած է՝ նոյն նուիրատու ժողովրդոց այգեաց անվնաս պահպանման եւ արգասաւորման համար օրհնութեան աղօթք կարդալ եկեղեցւոյ մէջ։ Այս պատճառաւ ամեն տարի՝ Վարդավառի կամ Ս. Աստուածածնի Վերափոխման տօնի օրը, յաւարտ Ս. Պատարագի՝ խաղողոյ օրհնութիւնը կը կատարուի.*

## Եկեղեցական Անօթք, Զգեստք, Սպասք եւ Մատեանք.

*Բաց ի Ս. Խաչէն, Ս. Աւետարանէն եւ Սրբոց Մասունքէն՝ եկեղեցական սրբազան անօթներն են Սկիհ և Մաղզման, Մասնատուփ, Բաժակաման, Աղաւնի եւ Աւազան Միւռոնի ։*

Սկիհ եւ Մաղզման. — *Նշանակ է Քրիստոսի Ծննդեան Մսրոյն եւ Գերեզմանին ։ Պատարագիչը Մաղզմանին վրայ կը դնէ սրբագործելի անխմոր եւ թարմ հացը-նշխարը, եւ Սկիհին մէջ կը հեղու անարատ բաժակը-գինին ։*

Մասնատուփն *է արծաթեայ կամ մետաղեայ տուփիկ մը, յորում կը պահեն քահանայք Ս. Հաղորդութենէն մաս մը՝ ի պէտս հաղորդութեան հիւանդաց, որոնք անկարող են եկեղեցի երթալու ։*

Բաժակամանն *է արծաթեայ կամ ապակեայ շիշը, յորում կը պահուի բաժակցու գինին ։*

Աղաւնի *, որ իբրեւ օրինակ Հոգւոյն Սրբոյ մեծարուեցաւ, արծաթէ շինուած ձեւը կը գործածուի եկեղեցւոյ մէջ, յորում կը պահուի Ս. Միւռոնը՝ Դրոշմի Ս. խորհրդոյ եւ շնորհաբաշխութեան ժամանակ ի կիր արկանելու համար ։*

Աւազան Միւռոնի. — *Առանց Մաղզմանի փոքրադիր սկիհ մ'է, որ կը գործածուի եկեղեցւոյ մէջ, երբ Դրոշմի եւ շնորհաբաշխութեան համար՝ Ս. Միւռոն պարունակող Աղաւնիէն Միւռոն առնուլ հարկ լինի ։*

Եկեղեցական Զգեստք *են շուրջառ, ժամարարի շապիկ, փորուրար, գօտի, բազպան, վակաս, սաղա-*

ւարտ, Թագ՝ արտախուրակօք, եպիփորան, քահանայից փորուրար, ուրար սարկաւագի, չապիկ դպրաց, վեղար, փիլոն եւ հողաթափ։

Կուսակրօն քահանայք եկեղեցւոյ մէջ կը դնեն ի գլուխ վեղար, զոր Եպիսկոպոսը տուչութեամբ կուտայ, որ է նշան մեռելութեան վասն աշխարհի. Նաեւ կը գործածեն փիլոն։

Ամուսնաւոր քահանայք եկեղեցւոյ մէջ կը դնեն ի գլուխ՝ խաչաձեւ սեաւ գդակ եւ սեաւ փիլոն (1), զոր Եպիսկոպոսը կու տայ տուչութեամբ ի քահանայական ձեռնադրութեան։

Հայրապետք, Եպիսկոպոսք եւ Վարդապետք՝ եկեղեցական պաշտամունք կատարելու եւ քարոզելու ժամանակ կը գործածեն գաւազան։

Հայրապետք եւ Եպիսկոպոսք կը գործածեն Կեռգաւազան, որ նշան է հովուելու ժողովուրդն։ Կը գործածեն նաեւ մատանի իրենց ճկոյթին վրայ, որ նշան է իրենց ընդ հարսին եկեղեցւոյ փեսայութեան.

Վարդապետք կը գործածեն օձաձեւ գաւազան, զոր Եպիսկոպոսը տուչութեամբ կու տայ իբրեւ մասնաւոր իշխանութիւն՝ ուսուցանելու ժողովուրդն քարոզութեամբ բանին Աստուծոյ։

Եկեղեցական Սպասք *են գաւազան, բուրուառ, խաչվառ, քշոց, ծնծղայ, ջահ, կանթեղ, աշտանակ, վարագոյր, գրակալ, ծածկոց սկիհի, փռոց սեղանի, Խաչի եւ Աւետարանի բռնիչ, գորգ, զանգակ, եւ այլն՝ եւ այլն։*

(1) Փիլոնն ըստ ոմանց ոչ միայն եկեղեցւոյ մէջ, այլեւ փողոցը գործածելու եկեղեցական տարազն է,

*Այս ամէն սպասներէն ոմանք կային Իսրայէլեան տաճարաց մէջ, ինչպէս են գաւազան, բուրուառ, ծնծղայ, կանթեղ, աշտանակ, վարագոյր, եւ այլն։*

## *Եկեղեցական Մատեանք*

Եկեղեցական Մատեանք *են Ս. Աւետարան, Գործք Առաքելոց եւ Թուղթք, Սաղմոս, Ժամագիրք, Շարական, Պատարագամատոյց կամ Խորհրդատետր, Տաղարան, Տօնացոյց, Ճաշոց, Մաշտոց, Յայսմաւուրք, Նարեկ։*

*Ս. Աւետարանը՝ որ համօրէն քրիստոնեայ ազգաց ամենէն սիրելի գիրքն է, կը պատմէ մեզ հաւատացելոց՝ Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ Ծնունդը, Մըկրտութիւնը, քարոզութիւնները, առակները, հըրաշքները, պատգամները, չարչարանքը, խաչելութիւնը, մահը, թաղումը, յարութիւնն ու համբարձումն, նաեւ կ՚ուսուցանէ մեզ ա՛յն ուղիղ բարոյականութիւնն, որոյ հիմն է սէր առ Աստուած եւ առ ընկերս։*

Գործ Առաքելոց եւ Առաքելական Թուղթք *են կանոնական գիրք Նոր Կտակարանի, որոնք կը պատմեն թէ՝ ի՛նչպէս հիմնուեցաւ քրիստոնէական եկեղեցին եւ թէ՝ ի՛նչպէս Հոգին Սուրբ առաջնորդեց եւ օրհնեց Քրիստոսի առաջին հետեւողները։*

*Գործ Առաքելոց գիրքը կը պատմէ Քրիստոսի յերկինս համբառնալէն սկսեալ մինչեւ Հոգւոյն Սրբոյ գալուստը։*

Գործք Առաքելոց գիրքը կը պատմէ Պօղոսի դարձն ու՝ կոչումը, անոր առաքելական եռանդն ու աշխատութիւններն եւ բոլոր Առաքելոց դէմ յարուցած հալածանքը։

Առաքելական Թուղթք Նամակի ձեւով գրուածքներ են, զորս Առաքեալք գրած են առ Նախնի հաւատացեալս՝ յորդորելու, խրատելու եւ Ս. Աւետարանի մէջ յայտնուած փրկութեան ճանապարհն հաւատացելոց ցուցնելու այլ եւ այլ առիթներով։

Սաղմոսն Իսրայէլեան տաճարին մէջ զԱստուած օրհնելու համար Դաւիթ Մարգարէին յօրինած երգոց եւ փառաբանութեանց ամբողջութիւնն է, որ կրօնական ամեն պաշտամանց մէջ կա՛մ կ'ըսուի ի թիւ եւ կա՛մ կ'երգուի ի ձայն։

Ժամագիրքն է՝ օրուան ժամերու վրայ եկեղեցւոյ մէջ կատարուելիք հասարակաց աստուածպաշտութեան վերաբերեալ մաղթանաց, քարոզից, աղօթից եւ երգոց գիրքը, զորս երկասիրած են Երանաշնորհ Ս. Թարգմանիչք մեր Սահակ եւ Մեսրոպ, Հայրապետք Գիւտ, Յովհան Մանդակունի եւ Ներսէս Շնորհալի։

Շարականն է գիրք հոգեւոր երգոց Հայաստանեայց Ս. եկեղեցւոյ՝ յօրինուած մեր երանելի Ս. Հայրապետներէն եւ Նախնի հոգեւոր վարդապետներէն, որոնք կ'երգուէին հասարակաց աստուածպաշտութեան ժամանակ։

Շարականք չորս կարգի բաժնուած են, Տէրունական, Սրբոց, Պահոց (ապաշխարութեան) եւ Հանգստեան (Ննջեցելոց)։

Պատարագամատոյց կամ Խորհրդատետր է գրքոյկ մը,

որ ժամարարը կ'ընթեռնու ի ծածուկ եւ ի ձայն Ս. Պատարագի արարողութեան ժամանակ՝ նշանակուած յատուկ աղօթքները։ Խորհրդատետրն է որ ամեն ժամարարի աջ կողմը կը դրուի Սեղանին վրայ՝ ի ժամ Ս. Պատարագի։

Տաղարանն է գիրք մը, որուն մէջ կան մեղեդիներ, տաղեր եւ Ս. Պատարագի ժամանակ՝ երգեցիկ դասէն կարդալիք եղանակաւոր հոգեզմայլ երգերը։

Տօնացոյցն է կանոն եւ առաջնորդ ամեն տօնակատարութեանց, որու մէջ նշանակուած են ամբողջ տարեկան շրջանին իւրաքանչիւր աւուր հասարակաց աղօթից վերաբերեալ սաղմոսք, շարականք, ընթերցմունք Ս. Գրոց եւ այլ հոգեւոր երգեցողութիւնք։

Տօնացոյցի հետեւողութեամբ կը պատրաստուի Օրացոյցի կրօնական մասը։

Ճաշոցն է գիրք քաղուածոյ Հին եւ Նոր Կտակարանաց, իւրաքանչիւր աւուր համար ըստ պատշաճի սահմանուած, հասարակաց աստուածպաշտութեան ժամանակ կարդացուելու նպատակաւ։

Ճաշոցի մէջ առնուած են այլեւայլ օրհնութեանց աղօթքներ ու ճառեր, յօրինուած ի մեր նախնի Ս. Հարց եւ Վարդապետաց։

Մաշտոցն է Հայաստանեայց Ծիսարանը Ս. Եկեղեցւոյ, զոր Ս. Մեսրոպ՝ գրական այլեւայլ աշխատութեանց մէջ կարգադրեց պատշաճապէս–

Ծիսարանը՝ Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ աստուածպաշտութեան եւ խորհրդապարգեւ Ս. Խորհրդոց կատարման եւ մատակարարութեան վերաբերեալ եւ եկեղեցական արարողութեանց պատկանեալ կարգերն ու

*կանոններն կը պարունակէ, որոց մեծ մասը նոյն ինքն Ս. Մեսրոպ յօրինած ըլլալով՝ իւր անկանուամբ կոչուեցաւ «Մաշտոց»։ Ի վերջոյ՝ եկեղեցւոյ նախնի Ս. Հարք ճոխացուցին Ծիսարանն յօրինմամբ այլեւայլ աղօթից։*

**Ցայսմաւուրք**՝ *որ կը կարդացուի ամեն երեկոյ՝ յառաջ քան զսկզբնաւորութիւն հասարակաց աղօթից, է պատմութիւն Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ եւ Փրկչին կատարած փրկագործ անօրինութեանց եւ աստուածահաճոյ Սրբոց նախանձելի եւ օրինակելի վարուց ու քարուց, եւ անոնցմէ ոմանց վկան քրիստոնէական հաւատոյ նահատակութեան նկարագիրը։*

**Նարեկն** *է գիրք հոգեբուղխ աղօթից Գրիգորի Նարեկացւոյ, որ անոր ուրիչ երկասիրութիւններէն գերազանց է վսեմ իմաստից կողմանէ, եւ որ ամեն երկիւղած սրտերու մէջ խորին տպաւորութիւն կը թողու։*

*Այս աղօթագիրք եկեղեցական մատենից կարգէն է անոր համար՝ որ կը պարունակէ իր մէջ փառաւորական եւ գոհացողական աղօթքներ, նաեւ զղջման, խոստովանութեան, ապաշխարութեան, բժշկութեան եւ այլ պէս պէս բարի խնդրուածոց կատարման վերաբերեալ պաղատանքներ, որոնք կը կարդացուին Ս. Եկեղեցւոյ մէջ։*

**ՎԵՐՋ**

# ՑԱՆԿ ՆԻՒԹՈՑ


Երես

ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ — ԱՍՏՈՒԱԾՊԱՇՏՈՒԹԻՒՆ ........ 9

ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

ԳԼՈՒԽ Ա.

*Կանոնական ժամերգութիւնք* ........ 10
*Գիշերապաշտօն կամ Գիշերային ժամ* ........ 15
*Առաւօտեան ժամ* ........ 18
*Արեւագալ* ........ 25
*Երրորդ ժամ* ........ 26
*Վեցերորդ* » ........ 27
*Իններորդ* » ........ 27
*Երեկոյեան* » ........ 28
*Խաղաղական* » ........ 31
*Հանգստեան* » ........ 32

ԳԼՈՒԽ Բ.

ԾԻՍԱԿԱՆ ԵՂԱՆԱԿՔ ........ 33
*Խաչակնքել* ........ 34
*Ծնրադրել* ........ 34
*Երկրպագել* ........ 34
*Խունկ ծխել* ........ 43
*Խնկարկել* ........ 35
*Օրհնել Խաչիւ եւ Աւետարանաւ* ........ 35
*Թափօր ելնել* ........ 35
*Նախատօնակ* ........ 36
*Հսկում* ........ 36

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ ........................

### ԳԼՈՒԽ Ա.

| | Երես |
|---|---|
| ՏՆՕՐԻՆԱԿԱՆ ՏՕՆՔ ........................ | |
| *Աւետումն* ........................ | 41 |
| *Ծնունդ Տեառն մերոյ* ........................ | 42 |
| *Անուանակոչութիւն (Ութօրէք)* ........................ | 45 |
| *Տեառնընդառաջ* ........................ | 46 |
| *Ծաղկազարդ* ........................ | 47 |
| *Վերջին Ընթրիք եւ Ոտնալուայ* ........................ | 49 |
| *Չարչարանք եւ Խաչելութիւն Քրիստոսի* ........................ | 51 |
| *Զատիկ — Յարութիւն Քրիստոսի* ........................ | 52 |
| *Համբարձումն Քրիստոսի* ........................ | 53 |
| *Հոգեգալուստ* ........................ | 53 |
| *Վարդավառ* ........................ | 54 |

### ԳԼՈՒԽ Բ.

ՏԷՐՈՒՆԱԿԱՆ ՏՕՆՔ ........................

Յօդուած Ա.

| | |
|---|---|
| *Յղութիւն Ս. Կուսին յԱնւայէ* ........................ | 56 |
| *Ծնունդ Ս. Կուսին յԱննայէ* ........................ | 57 |
| *Ընծայումն Ս. Կուսին ի տաճարն* ........................ | 57 |
| *Վերափոխումն Ս. Աստուածածնի* ........................ | 58 |

Յօդուած Բ.

| | |
|---|---|
| ՏՕՆՔ Ս. ԽԱՉԻ ........................ | |
| *Խաչվերաց* ........................ | 59 |

| | Երես |
|---|---|
| Գիւտ Ս. Խաչի | 60 |
| Երեւումն Ս. Խաչի | 60 |
| Վարագայ Ս. Խաչ | 61 |


## ԳԼՈՒԽ Գ.


| | |
|---|---|
| ՍՐԲՈՑ ՏՕՆՔ ԿԱՄ ՅԻՇԱՏԱԿՔ | |
| ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆՔ ԳԼԽԱՒՈՐ ՏՕՆԻՑ ԵՒ ԿԻՒՐԱԿԷԻՑ | |
| Կաղանդ և տարեմուտ | 65 |
| Ծնունդ Յովհաննու Կարապետի | 66 |
| Առաջաւորաց պահք | 66 |
| Տօն Ս. Ղեւոնդեանց քահանայից | 67 |
| Տօն Ս. Վարդանանց զօրավարաց | 67 |
| Տիեզերական ժողով Կ. Պօլսոյ | 68 |
| Բուն բարեկենդան | 68 |
| Երկրորդ կիւրակէ մեծի պահոց | 70 |
| Երրորդ » » » | 71 |
| Չորրորդ » » » | 72 |
| Հինգերորդ » » » | 73 |
| Տօն. Ս. Գրիգոր Լուսաւորչի մուտն ի վիրապն | 74 |
| Վեցերորդ կիւրակէ մեծի պահոց | 74 |
| Յիշատակ յարութեան Ղազարու | 76 |
| Աւագ երկուշաբթի | 76 |
| Աւագ երեքշաբթի | 77 |
| Աւագ չորեքշաբթի | 78 |
| Աւագ հինգշաբթի | 79 |
| Աւագ ուրբաթ | 81 |
| Ճրագալոյց | 83 |
| Զատիկ — Յարութիւն Քրիստոսի | 84 |

Երես

Նոր կիւրակէ կամ կրկնազատիկ ............ 85
Աշխարհամատրան կանաչ կիւրակէ ............ 86
Կարմիր կիւրակէ ............ 86
Երկրորդ ծաղկազարդ ............ 87
Առաջին կիւրակէ յարութեան ............ 87
Տօն Ս. Հռիփսիմեանց ............ 88
» Ս. Գայիանեանց ............ 88
» Ս. Յովհաննու Կարապետին և Աթանագինեայ եպիսկոպոսին ............ 88
» Ս. Գրիգոր Լուսաւորչի ելն ի վիրապէն 88
» Կաթողիկէ Ս. Էջմիածնի ............ 88
» Մեծին Ներսիսի Հայրապետին ............ 89
Գիւտ Նշխարաց Ս. Գրիգոր Լուսաւորչի ...... 89
Տօն Ս. Թարգմանչաց ............ 90
» Ս. Տրդատայ թագաւորին ............ 90
Գիւտ տփոյ Ս. Աստուածածնի ............ 91
Տօն սրբոց երկոտասան առաքելոց ............ 91
Յիշատակ տապանակին հնոյ և տօն նորոյս Ս. եկեղեցւոյ ............ 92
Թադէոս առաքեալ և Սանդուխտ կոյս ............ 93
Տիեզերական ժողով Եփեսոսի ............ 93
Տօն Շողակաթի Ս. Էջմիածնի ............ 94
Գիւտ Գօտւոյ Ս. Աստուածածնի ............ 94
Տիեզերական ժողով Նիկիոյ ............ 95
Տօն եկեղեցւոյ ի Նաւակատիս Ս. Խաչին .... 95
» եօթանասուն և երկու աշակերտաց Քրս.ի 96
» չորից աւետարանչաց ............ 97
» Հրեշտակապետաց ............ 97
» ամենայն սրբոց ............ 97